մանակաընթացքում աճել է նավատորմը: Այժմ կարմիր նավատորմայինների մեջ կեսից ավելին կոմերիտականներ և կուսակցության անդամներ են:

Խորհրդային Միության ծովային սահմաններն անծայրածիր են: Վտանգը ծովի կողմից մեծ է, և Լենին-Ստալինի կուսակցությունն ու խորհրդային կառավարությունը, ամբողջ ժողովրդի աջակցությամբ, քաղաքացիական պատերազմից հետո ընկած բոլոր տարիների ընթացքում անդուլ կերպով աշխատել են Ռազմա-Ծովային նավատորմի ստեղծման վրա: Մեր նավատորմի շինարարության գործում ակտիվ մասնակցություն է ունեցել նաև Համամիութենական Լենինյան կոմերիտմիությունը, Կարմիր Ռազմա-Ծովային Նավատորմի շեֆը:

Համ Կ(բ)Կ 17-րդ համագումարում 1934 թվի հունվարի 30-ին Պաշտպանության ժողովրդական կոմիսար, Խորհրդային Միության մարշալ ընկ. Վորոշիլովն այսպես բնութագրեց ռազմածովային ուժերն ուժեղացնելու աշխատանքը.—

«...Ընկեր Ստալինի մշտական և անմիջական մասնակցությամբ ու ղեկավարու-



թյամբ մենք աշխատում ենք մեր Ռազմա-Ծովային ուժերը նույնպես ուժեղացնելու վրա, որոնք բազմահազար կիլոմետր բաց ծովային սահմաններ ունեցող մեր յերկրի պաշտպանության համար շատ մեծ նշանակություն ունեն: Ընկեր Սերգոն, մեր մեջ ասած, այս գործում նաև ունի ոչ քիչ բեռնվածություն: Վերջին տարիներում մենք ոչ միայն ամրացրինք և ուժեղացրինք Բալթիկ և Սև ծովերի ծովային ուժերը, այլ և... որոշ չափով բավականին նավեր տեղափոխեցինք նոր ջրանցքով դեպի հյուսիս, որպեսզի անպաշտպան չլինենք նաև այս տեղամասում:

Բացի այդ, հարձակման անմիջապես յենթարկվելու սպառնալիքը— Պրիմորյեյի վրա՝ մեզ հարկադրեց Ռազմա-Ծովային ուժեր ստեղծել նաև հեռավոր Արևելքում...

Յեզրափակելով մեր ծովային ուժերի մասին, յես մեկ անգամ ևս հարկ եմ համարում նշելու, որ ընկեր Ստալինը ձեռնարկեց, ինչպես հարկ է, ստալինաբար և այդ տեղամասում, և յես չեմ տարակուսում, որ ինդուստրացման հաղթանակների բազայի վրա ամրացած նավաշինական արդյունաբերությունը կօգնի մեզ մեր նա-

վատորմերը դարձնելու իսկական Բանվորա-Գյուղացիական հզոր նավատորմեր...»:

Ռազմա-Ծովային Նավատորմի ինքնուրույն ժողկոմատ կազմակերպելը առաջ է բերել յերիտասարդության մի նոր, կրակոտ մղում դեպի ռազմական շոգենավերը գնալու և ԽՍՀՄ պաշտպանության մարտական պահնորդ կանգնելու համար:

Յես կը բերեմ յերիտասարդությունից ժողկոմատում ստացված շատ նամակներից մեկը: Գրում է մի յերիտասարդ կոլտնտեսական: Նա 18 տարեկան է: Նա խնդրում է իրեն ընդունել նավատորմում.—

«Յես կտայի ամբողջ ուժերս ու կյանքս, յեթե թշնամին մտածի մեր ծովային սահմանն անցնել: Յես մինչև արյանս վերջին կաթիլը կմարտնչեյի ընդդեմ թշնամիների, հանուն մեր ծաղկող քաղաքների և կոլտնտեսությունների: Յես ցանկանում և ուզում եմ ծովագնաց լինել վորևէ նավի վրա անկախ նրանից թե վոր ծովում կլինի՝ — Հեռավոր Արևելքում կամ Հյուսիսում, Հարավում կամ Արևմուտքում»:

Այդ յերիտասարդ կոլտնտեսական ընկեր Կոնյուշկովի բերանով խոսում է ամբողջ



խորհրդային յերիտասարդությունը, ամբողջ՝ նավատորմի անձնակազմը:

Իր հայրենիքի ծովային պաշտպանության մարտական պահնորդ կանգնած խորհրդային յերիտասարդությունը նավատորմին տվել է նշանավոր վոչ քիչ մարդիկ, վորոնք արագորեն արժանի կերպով առաջ են քաշվել նավատորմում բարձր պաշտոնների:

Այդպիսի փառապանծ հարյուրավոր մարդկանցից կարելի յե անվանել թեկուզ ընկեր Կուզնեցովին, վորը հենց 1926 թվականին ավարտեց Ռազմա-Ծովային դպրոցը, իսկ այժմ Խաղաղ ովկիանոսային նավատորմի հրամանատարն է: Ընկեր Կուզնեցովը 1935 թվականին կառավարության կողմից պարգևատրված է Կարմիր Աստղի շքանշանով, իսկ 1937 թվականին՝ Լենինի շքանշանով և Կարմիր Դրոշի շքանշանով: Կարելի յե անվանել նաև ընկեր Դրոզդին, վորը հենց 1929 թվականին է ՌազմաԾովային դպրոցի նստարանից հեռացել, իսկ այժմ խոշոր միավորման հրամանատար է: Ընկեր Դրոզդը 1937 թվականին պարգևատրված է յերկու շքանշաններով՝ — Լենինի շքանշանով և Կար-

վատորմերը դարձնելու իսկական Բանվորա-Գյուղացիական Հզոր նավատորմեր...»:

Ռազմա-Ծովային Նավատորմի ինքնուրույն ժողկոմատ կազմակերպելը առաջ է բերել յերիտասարդության մի նոր, կրակոտ մղում դեպի ռազմական շոգենավերը գնալու և ԽՍՀՄ պաշտպանության մարտական պահնորդ կանգնելու համար:

Յես կը բերեմ յերիտասարդությունից ժողկոմատում ստացված շատ նամակներից մեկը: Գրում է մի յերիտասարդ կոլտնտեսական: Նա 18 տարեկան է: Նա խնդրում է իրեն ընդունել նավատորմում.—

«Յես կտայի ամբողջ ուժերս ու կյանքս, յեթե թշնամին մտածի մեր ծովային սահմանն անցնել: Յես մինչև արյանս վերջին կաթիլը կմարտնչեյի ընդդեմ թշնամիների, հանուն մեր ծաղկող քաղաքների և կոլտնտեսությունների: Յես ցանկանում և ուզում եմ ծովագնաց լինել վորևե նավի վրա անկախ նրանից թե վոր ծովում կլինի՝ — Հեռավոր Արևելքում կամ Հյուսիսում, Հարավում կամ Արևմուտքում»:

Այդ յերիտասարդ կոլտնտեսական ընկեր Կոնյուշկովի բերանով խոսում է ամբողջ



խորհրդային յերիտասարդությունը, ամբողջ՝ նավատորմի անձնակազմը:

Իր հայրենիքի ծովային պաշտպանության մարտական պահնորդ կանգնած խորհրդային յերիտասարդությունը նավատորմին տվել է նշանավոր վոչ քիչ մարդիկ, վորոնք արագորեն արժանի կերպով առաջ են քաշվել նավատորմում բարձր պաշտոնների:

Այդպիսի փառապանծ հարյուրավոր մարդկանցից կարելի յե անվանել թեկուզ ընկեր Կուզնեցովին, վորը հենց 1926 թվականին ավարտեց Ռազմա-Ծովային դպրոցը, իսկ այժմ Խաղաղ ովկիանոսային նավատորմի հրամանատարն է: Ընկեր Կուզնեցովը 1935 թվականին կառավարության կողմից պարգևատրված է Կարմիր Աստղի շքանշանով, իսկ 1937 թվականին՝ Լենինի շքանշանով և Կարմիր Դրոշի շքանշանով: Կարելի յե անվանել նաև ընկեր Դրոզդին, վորը հենց 1929 թվականին է ՌազմաԾովային դպրոցի նստարանից հեռացել, իսկ այժմ խոշոր միավորման հրամանատար է: Ընկեր Դրոզդը 1937 թվականին պարգևատրված է յերկու շքանշաններով՝ — Լենինի շքանշանով և Կար-

միր Դրոշի շքանշանով: Եվ այդպիսի սքանչելի հրամանատարներ, քաղաշխատողներ և կարմիր նավատորմայիններ մեր նավատորմերում հարյուրավորներ, հազարավորներ են:

Ռազմա-Ծովային Նավատորմի անձնակազմն ամբողջ վճռականությամբ մաքրըվում է հայրենիքի դավաճաններից, ֆաշիստական այլև այլ աղտեղություններից և բորբոսից: Կարմիր — նավատորմայինները, քաղաշխատողներն ու հրամանատարները հասկանում են, վոր կուսակցությունն ու կառավարությունը մեծ վստահություն են ցույց տվել նավատորմի անձնակազմին, մի հատուկ ժողկոմատ ստեղծելով և ծովային նավատորմի հետագա ինքնուրույն զարգացումը և կատարելագործումը ծովագնացներին հանձնարարելով: Նրանք բոլորը՝ սկսած կարմիր նավատորմայինից մինչև ամենամեծ ղեկավարները, իրենց հսկայական պատասխանատվությունն զգալով կգործադրեն բոլոր ուժերը, վորպեսզի էլ ավելի բարձրացնեն Ռազմա-Ծովային Նավատորմի մարտունակությունը և արդարացնեն իրենց ցույց տված վստահությունը:



Ռազմա-Ծովային Նավատորմի Ժողովրդական Կոմիսարիատ ստեղծելու մասին ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի առաջին Նստաշրջանի վորոշումը լայն արձագանք գտավ բանվորների, կոլտնտեսականների, գիտության և արվեստի մարդկանց շրջանում, մեր մեծ, անծայրածիր հայրենիքի բոլոր ամենահեռավոր անկյուններում. և՛ թերթերի խմբագրություններում, և ժողկոմատում ստացվում են վողջույններ, նակազներ՝ անխոնջորեն, ձեռքերն առանց ծալելու այսուհետև ևս ավելի ամրացնելու ԽՍՀՄ-ի ծովային պաշտպանությունը:

Ամբողջ խորհրդային ժողովրդի այդ միասնական բաղձանքը— այն է վկայում, վոր ժողկոմատի առջև կանգնած խնդիրները լուծվելու յեն: Իսկ դրանց լուծումը վոչ թե միայն անմիջապես Ռազմա-Ծովային Նավատորմում աշխատող մարդկանցից, այլև համապատասխան գործարանների բանվորներից, տեխնիկներից, ինժեներներից, գիտության մարդկանցից է կախված:

Ընկեր Սկորոբոգատկոն Լենինի քաղաքի և Լենինգրադի մարզի բանվորների, կոլտընտեսականների, խորհրդային ինտելի-

դենցիայի անունից Միության Խորհրդի ու Ազգությունների Խորհրդի հունվարի 19-ի համատեղ նիստում ողջունելով ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի պատգամավորներին՝ ասաց.—

«Մենք հատուկ ուշադրությամբ, հոգատարությամբ ու սիրով ենք կատարելու մեր անվեհեր Կարմիր Բանակի մարտական հզոր տեխնիկայով հագեցնելու գործում մեր առջև դրված խնդիրները և կանենք մեզնից կախված ամեն ինչ, վորպեսզի խորհրդային յերկիրն ունենա աշխարհում ամենաուժեղ Ռազմա-Ծովային նավատորմը, վորի մասին Գերագույն Խորհրդի նստաշրջանում խոսեց Խորհրդային Կառավարության պետը՝ Վյաչեսլավ Միխայլովիչ Մոլոտովը»:

Այդ խոսքերն արտահայտում են ամբողջ խորհրդային ժողովրդի վերաբերմունքը դեպի խորհրդային յերկրի ծովային և ովկիանոսային հզոր նավատորմի ստեղծումը:

Նավատորմի անձնակազմի պատասխանն եր հանդիսանում կրտսեր հրամանատար ջրասույզ ընկեր Սելեզնևի յելույթը միևնույն նիստում:



«Մեզ հարկավոր է և՛ ավելի հզոր նավատորմ, և՛ ավելի կատարելագործված ծովային ու ովկիանոսային նավատորմ: Այդպես է վորոշել կուսակցությունը, այդպես է վորոշել կառավարությունը, վորոշել է ամբողջ խորհրդային ժողովուրդը:

Մենք, կարմիր նավատորմայիններս՝ հրամանատարներս ու քաղաշխատողներս պատասխանում ենք՝— կկատարե՛նք, մեր հայրենիքին արժանավոր ծովային և ովկիանոսային նավատորմը կստեղծենք»:

Այդ հայտարարությունն իր հիմքում ունի ամուր բազա: Այդ բազան այն է, վոր Ռազմա-Ծովային Նավատորմի շինարարության և զարգացման ղեկավարությունը մեր կուսակցությունն է կենսագործում, վոր այդ հարցով որնիբուն ինքն ընկեր Ստալինն է զբաղվում: Այդ բազան՝ մեր սոցիալիստական ինդուստրիայի մեջն է, վորը լիովին ապահովում է այն պահանջները, վորոնք առաջադրվում են նրան ծովային և ովկիանոսային մեծ նավատորմի շինարարության կողմից:

Մեր սոցիալիստական հայրենիքի այժմյան նավատորմը պատրաստ է կատարելու

սոցիալիզմի յերկրի ծովային սահմանների պաշտպանման ամեն մի խնդիր: ԽՍՀՄ Ռազմա-Ծովային այսօրվա նավատորմը ամենևին նման չէ նրան, ինչ որ էր այն նույնիսկ սրանից հինգ տարի առաջ: Վերջին տարիներս մեր ամբողջ յերկրի ինդուստրիալ աճման հետ միասին կարմիր նավատորմը նույնպես, առանձնապես ստորջրյա նավատորմը, աճել է թե՛ որակապես, թե քանակապես:

Մեր գծանավերը, թեպետ և 1914–15 թվականների կառուցած նավերն են, մոդեռնացումից հետո դարձան լիովին մարտական նավեր:

Մեր Միության ծովափերի կարևորագույն քաղաքական ու տնտեսական կենտրոններն ու շրջանները պաշտպանող ամրացված ռայոնների քանակությունը վերջին հինգ տարում աճել է ավելի քան յերեք անգամ: Առանձնապես կարևորն այն է, որ այդ ամրացված ռայոնները հագեցված են ծանր կալիբրանոց հրետանիով: Պետք է առանձնապես շեշտել այն փաստը, որ ծանր հրետանու մեջ մենք ունենք շարժական մարտկոցների մի ավելի մեծացած խումբ:



Առափնյա պաշտպանության ընդհանուր սպառազինվածությունն ամբողջ հրետանու մեջ աճել է ավելի քան մեկ ու կես անգամ:

Տարեցտարի բարձրանում է խորհրդային նավատորմի մարտական պատրաստականության մակարդակը:

Յեթե 1933 թվականում Ռազմա-Ծովային Նավատորմի բոլոր նավերը կտրել են 560 հազար մղոն, ապա 1937 թվականում 1 միլիոն 50 հազար մղոն են կտրել, այսինքն՝ դրեթե յերկու անգամ ավելի:

Այս բոլոր թվերը ցույց են տալիս, որ մենք արդեն այժմ ունենք այնպիսի Ռազմա-Ծովային Նավատորմ, ծովային ավիացիա և առափնյա պաշտպանություն, որոնք պատրաստ են հակահարված տալու թշնամիների ամեն մի հարձակմանը ծովից և կատարել այն ամեն խնդիրները, որոնք իրենց կառաջադրվեն խորհրդային կառավարության կողմից մեր հայրենիքի շահերը, պատիվն ու արժանիքը պաշտպանելու բնագավառում:

ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի առաջին նստաշրջանում խորհրդային կառավարության պետի՝ ընկեր Մոլոտովի ճառը նոր

ժողկոմատի աշխատողներին, նավատորմերի հրամանատարությանը, մեր պաշտպանական ինդուստրիայի աշխատողներին գործունեության ծրագիր է տալիս: Արդյունաբերության աշխատողների խնդիրն այն է, որպեսզի ոչ միայն չթուլացնեն նավատորմերը համեմատաբար փոքր տոննաժի նավերով համալրելու տեմպը, այլև ուժեղացնեն այդ տեմպերը միաժամանակ բարձրացնելով ամբողջ աշխատանքի որակը: Արդյունաբերության աշխատողները պարտավոր են կատարել համապատասխան գործարանների կառուցողական գործի արագացման պահանջը, այն հաշվով, որպեսզի ամենակարճ ժամկետներում ե՛լ ավելի լայնորեն ծավալվի մեծ տոննաժի նավերի շինարարությունը և ե՛լ ավելի բարձրացվեն Ռազմա-Ծովային Նավատորմի շինարարության տեմպերը:

Արդի մարտական նավը՝ տեխնիկական տեսակետից ամենաբարդ կառուցվածքն է: Նրա կառուցմանը մասնակցում են շատ գործարաններ: Ուստի այս կամ այն նավի կառուցմանը մասնակցություն ունեցող բոլոր գործարանների բարձրորակ աշխատանքը հանդիսանում է ԽՍՀՄ Ռազմա-



Ծովային Նավատորմի շինարարության ընդհանուր հաջողության անհրաժեշտագույն պայմանը:

Նոր ժողկոմատի աշխատողներից և նավատորմերի հրամանատարությունից, բոլոր հրամանատարներից և քաղաշխատողներից Ռազմա-Ծովային Նավատորմի զարգացման նոր էտապը նույնպես ուժերի նոր լարում է պահանջում առաջադրված խնդիրները լուծելու համար:

Կազմակերպել ԽՍՀՄ ծովային և օվկիանոսային հզոր նավատորմն իր բարդ տեխնիկայով, իր հզոր հրետանիով, իր ծովային ավիացիայով, և Խորհրդային ձևով, բոլշևիկորեն դաստիարակել բարձրորակ հրամանատարների և կարմիր նավատորմայինների բազմաթիվ կադրերը՝ ահա՛ հիմնական խնդիրները: Հեշտ խնդիրներ չեն: Դրանք պահանջում են ամենաբազմազան գիտելիքներ, կազմակերպչական և քաղաքական ունակություններ, որակավորված կադրեր: Այդ խնդիրները կարելի է լուծել միայն աշխատանքով, սոցիալիստական մրցության հիման վրա, կուլտուրայի և կազմակերպվածության, բարդ տեխնի-

կան կատարելագործված կերպով տիրապետելու հիման վրա, հեղափոխական յերկաթյա կարգապահության հետագա ամրապնդման հիման վրա:

Համ Կ(բ)Կ Կենտկոմի Պլենումի 1938 թվի հունվարի 19-ին հրապարակած վորոշումը բացառիկորեն վիթխարի նշանակություն ունի մեր կուսակցության և յերկրի համար: Կենտրոնական Կոմիտեն պարտավորեցրեց բոլոր կուսկազմակերպություններին՝ բոլշևիկյան զգաստությունն անդուլորեն բարձրացնելով, ժողովրդի բոլոր թշնամիներին անողոքաբար վոչնչացնելով, վերջ տալու դեպի կուսակցության անդամը անհիմն և հախուռն մոտեցում ունենալու հակակուսակցական պրակտիկան: Այդ խնդրի հաջողությամբ լուծման համար հրամանատարները, քաղաշխատողները պետք է ե՛լ ավելի լավ կազմակերպեն ամբողջ կուսակցական-քաղաքական աշխատանքը:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Հունվարյան Պլենումի վորոշումը նավատորմի կուսկազմակերպությունների աշխատանքի կոնկրետ ծրագիրն է:

Մենք պետք է ձեռքերս չծալելով, հա-



մառորեն աշխատենք ծովային և ովկիանոսային ուժեղ նավատորմ ստեղծելու վրա: Այդ են մեզնից պահանջում կուսակցությունը, կառավարությունը, ամբողջ խորհրդային ժողովուրդը, այդ է մեզնից պահանջում մեր ընկեր Ստալինը, և այդ պահանջը ԽՍՀՄ Ռազմա-Ծովային Նավատորմի անձնակազմի կողմից կկատարվի՛:

Ռազմական տագնապի ժամին մեր փառապանծ կարմիր նավատորմայինները, հրամանատարները, քաղաշխատողները՝ գծանավերի, հածանավերի, ականակիրների, սուզանավերի, տորպեդանավերի անձնակազմերը, առափնյա պաշտպանության հրետանավորները, ծովային ավիացիայի օդաչուները— անվեհեր Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի հետ միասին կկենսագործեն մեր սոցիալիստական պաշտպանության հիմնական սկզբունքը՝ հարվածել թշնամուն այն տերիտորիայում, վորտեղից կփորձի նա հարձակվել մեր վրա, հարվածե՛լ ցամաքո՛ւմ, ծովո՛ւմ, ոդո՛ւմ:

կան կատարելագործված կերպով տիրապետելու հիման վրա, հեղափոխական յերկաթյա կարգապահության հետագա ամրապնդման հիման վրա:

Համ Կ(բ)Կ Կենտկոմի Պլենումի 1938 թվի հունվարի 19-ին հրապարակած վորոշումը բացառիկորեն մեծ նշանակություն ունի մեր կուսակցության և յերկրի համար: Կենտրոնական Կոմիտեն պարտավորեցրեց բոլոր կուսկազմակերպություններին՝ բոլշևիկյան զգաստությունն անդուլորեն բարձրացնելով, ժողովրդի բոլոր թշնամիներին անողոքաբար վոչնչացնելով, վերջ տալու դեպի կուսակցության անդամը անհիմն և հախուռն մոտեցում ունենալու հակակուսակցական պրակտիկան: Այդ խնդրի հաջողությամբ լուծման համար հրամանատարները, քաղաշխատողները պետք է ե՛լ ավելի լավ կազմակերպեն ամբողջ կուսակցական-քաղաքական աշխատանքը:

ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Հունվարյան Պլենումի վորոշումը Նավատորմի կուսկազմակերպությունների աշխատանքի կոնկրետ ծրագիրն է:

Մենք պետք է ձեռքերս չծալելով, հա-



մառորեն աշխատենք ծովային և ովկիանոսային ուժեղ Նավատորմ ստեղծելու վրա: Այդ են մեզնից պահանջում կուսակցությունը, կառավարությունը, ամբողջ խորհրդային ժողովուրդը, այդ է մեզնից պահանջում մեր ընկեր Ստալինը, և այդ պահանջը ԽՍՀՄ Ռազմա-Ծովային Նավատորմի անձնակազմի կողմից կկատարվի՛:

Ռազմական տագնապի ժամին մեր փառապանծ Կարմիր Նավատորմայինները, հրամանատարները, քաղաշխատողները՝ գծանավերի, հածանավերի, ականակիրների, սուզանավերի, տորպեդանավերի անձնակազմերը, առափնյա պաշտպանության հրետանավորները, ծովային ավիացիայի ոդաչուները— անվեհեր Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի հետ միասին կկենսագործեն մեր սոցիալիստական պաշտպանության հիմնական սկզբունքը՝ հարվածել թշնամուն այն տերիտորիայում, վորտեղից կփորձի նա հարձակվել մեր վրա, հարվածե՛լ ցամաքո՛ւմ, ծովո՛ւմ, ոդո՛ւմ:

Վ. ՍԻԴՈՐՈՎ ՅԵՎ Գ. ՇԻԳԱԼԻՆ

# ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՅԵՎ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻՂԻ ՔՍԱՆ ՏԱՐԻՆ

Բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակը փետրվարի 23-ին տոնում է իր 20-րդ տարեդարձը: Կարմիր Բանակը մեր հայրենիքի բազմամիլլիոն ժողովրդի միս ու արյունն է: Ուստի, Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի տոնն ամբողջ խորհրդային ժողովրդի տոնն է հանդիսանում: Քաղաքացիական պատերազմի բոցերի մեջ ստեղծված Կարմիր Բանակն արդեն քսան տարի է, ինչ կանգնած է բանվորների ու գյուղացիների՝ աշխարհում առաջին սոցիալիստական պետության պաշտպանության դիրքում:

Կարմիր Բանակը — մեր սոցիալիստական



հայրենիքի հզոր նեցուկը— ստեղծել, աճեցրել ու դաստիարակել է Լենին-Ստալինի կուսակցությունը:

Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակի ամբողջ պատմական ուղին բաղկացած է յերեք գլխավոր էտապներից.— առաջին էտապը—1918–1923 թ. թ. — կազմում է քաղաքացիական պատերազմը և պատերազմը վերջանալուց հետո նրան հաջորդող զորացրումը. յերկրորդ էտապը— 1924—1928 թ. թ. սկսվեց ռազմական ռեֆորմով և ավարտվեց Կարմիր Բանակի վերջնական կազմակերպչական ձևավորմամբ. յերրորդ էտապը— 1928—1937 թ. թ. ստալինյան առաջին ու յերկրորդ հնգամյակների տարիներն են, Կարմիր Բանակի արմատական տեխնիկական վերազինման տարիները:

Կարմիր Բանակի պանծալի նախորդն է հանդիսանում Կարմիր Գվարդիան, վորի ստեղծման գործում խոշորագույն դեր է պատկանում մեր կուսակցության ռազմական կազմակերպությանը:

Բանվորներից կազմված կարմիր գվարդիական ջոկատներն իրենց ուսերի վրա տարան Խորհուրդների իշխանության հաստատման համար մղվող զինված պայքարի

ամբողջ ծանրությունը։ Նրանք իրենց վրա ընդունեցին հակահեղափոխության առաջին գրոհները և կործանիչ հարվածներ հասցրին նրան, ապահովելով խորհրդային իշխանության հաղթական յերթը։

## ԲԱՆՎՈՐԱ—ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄԸ

Հոկտեմբերյան սոցիալիստական Մեծ հեղափոխության առաջին իսկ օրերից, յերիտասարդ Խորհրդային հանրապետության առջև կանգնեցին ներքին հակահեղափոխության դեմ պայքարելու վիթխարի խնդիրները։ Լիակատար պարտություն կրելով յերկրի պրոլետարական կենտրոններում, ցարական գեներալների սպիտակգվարդիական բանդաները քաշվեցին ծայրամասերը, ձգտելով այնտեղ հենվել բնակչության ունևոր— կուլակային խավերի վրա։ Բացի դրանից, իմպերիալիստական յերկրները, վորոնք ձգտում եյին վոչնչացնել յերիտասարդ պրոլետարական պետությունը, սկսեցին ներքին հակահեղափոխության ուժերին ամեն կերպ ոգնություն ցույց տալ զենքով և դրամով։ Ուստի, Կարմիր գվարդիան այլևս ի վիճակի չեր կատարելու Խորհրդային պետության



պաշտպանության հսկայական խնդիրները։ Խորհրդային իշխանության առջև կանգնեց կանոնավոր Կարմիր Բանակ կազմակերպելու խնդիրը։

1918 թվի հունվարի 28-ին Լենինը ստորագրեց կամավոր հիմունքներով Բանվորա-գյուղացիական Կարմիր Բանակ կազմակերպելու դեկրետը։ Այդ դեկրետից կարճ ժամանակ հետո, կազմվեց Կարմիր Բանակի կազմավորման Համառուսական կոլեգիան։ Հիմնական աշխատանքն այդ կոլեգիայում կատարում եր կազմակերպչական— ագիտացիոն բաժինը, վորի կոմիսարն եր ընկ. Լ. Մ. Կագանովիչը։ Հաղթահարելով տրոցկիստների և բուխարինականների դիմադրությունը, վորոնք կատաղի պայքարում եյին դասակարգային, կանոնավոր, կարգապահ Կարմիր Բանակի շինարարության դեմ, կուսակցությունը և խորհրդային իշխանությունը կարողացան 1918 թվի ապրիլի կեսերին զենքի կոչել հարյուր հազարավոր կամավորների՝ սպիտակ գվարդիականների ու ինտերվենտների դեմ պայքարելու համար։

Կամավոր ծառայությունից պարտադիր զինվորական ծառայության անցնելը կա-

տարվում էր աստիճանաբար, զորակոչերի հաջողությունն ապահովող մի ամբողջ շարք նախապատրաստական բնույթի միջոցառումներից հետո: Այդ նպատակով, Ժողկոմխորհի 1918 թվի ապրիլի 8-ի դեկրետով հիմնվեցին ռազմական գործերի վոլոստային, գավառական, նահանգական և օկրուգային կոմիսարիատներ: 1918 թվի ապրիլի 22-ին հրատարակվեց Համառուսական Կենտգործկոմի դեկրետը՝ բոլոր բանվորներին և աշխատավոր գյուղացիներին պարտադիր կերպով ռազմական գործն ուսուցանելու մասին:

1918 թվի հոկտեմբերին Կարմիր Բանակն արդեն ուներ 368·510 մարտիկ: Ամփոփելով զինված ուժերի շինարարության առաջին արդյունքները, Լենինը Համառուսական Կենտգործկոմի և Մոսկվայի Խորհրդի՝ Ֆաբրիկա-գործարանային կոմիտեների ներկայացուցիչների հետ համատեղ ունեցած միացյալ նիստին ուղղված նամակում 1918 թ. հոկտեմբերի 3-ին առաջ քաշեց յերեք միլիոնանոց Կարմիր Բանակ ստեղծելու խնդիրը: «Մենք վորոշել էինք մինչև գարուն ունենալ 1·000·000 հոգուց բաղկացած բանակ. մեզ այժմ հարկավոր



է յերեք միլիոն հոգուց բաղկացած բանակ: Մենք կարող ենք այդ ունենալ: Յեվ մենք այն կունենանք»:[1] Լենինի և Ստալինի ղեկավարությամբ մեր կուսակցությունն ստեղծեց այդպիսի բանակ: Կարմիր Բանակի կազմակերպման գործում խոշորագույն դեր խաղացին ընկերներ Ձերժինսկին, Սվերդլովը, Ֆրունզեն, Վորոշիլովը, Կիրովը, Կագանովիչը, Որջոնիկիձեն և Կույբիշևը:

Համաշխարհային պրոլետարիատի մեծ առաջնորդ Լենինը միշտ ակտիվ ու անմիջական մասնակցություն էր ունենում Կարմիր Բանակի շինարարության և մարտական գործունեության ղեկավարման գործում: Կարմիր Բանակի ամբողջ ընթացքում, Լենինը կոնկրետ ցուցումներ և դիրեկտիվներ էր տալիս մասսաների հեղափոխական ակտիվությունը մոբիլիզացիայի յենթարկելու և կազմակերպելու ուղղությամբ, թշնամու նկատմամբ հաղթանակն ապահովելու համար: Ղեկավարելով յերկրի պաշտպանությունը, Լենինն արթուն հետևում էր նաև թիկունքի վիճա-

---

1) Լենին — հատ. 23, էջ 217.

կին: Նրա նախաձեռնությամբ 1918 թվի հունիսին ստեղծվում են հատուկ պարենջոկատներ: 1918 թվի օգոստոսին բանվորներին ուղղված դիմումի մեջ Լենինը կոչ է անում նրանց՝ անողոք պայքարի յելնել կուլակության դեմ, վորն այն ժամանակ մի շարք շրջաններում ապստամբություն եր բարձրացրել:

Լենինի հետ միասին, զինված ուժերի և Կարմիր Բանակի հաղթանակների կազմակերպման ուղղությամբ վիթխարի աշխատանք եր կատարում ընկեր Ստալինը: Քաղաքացիական պատերազմի տարիներին ընկեր Ստալինն անձամբ ղեկավարում եր ռազմաճակատների առավել պատասխանատու և վճռական տեղամասերը: Այնտեղ, վորտեղ իրադրությունը պահանջում եր բացառիկ յեռանդ, հեղափոխական հաստատակամություն և բոլշևիկյան ղեկավարություն, Լենինն ուղարկում եր ընկեր Ստալինին: Ընկ. Վորոշիլովը մատնանշում է՝ «...վոր կենտկոմը, ավելի ճիշտ Լենինը, Ստալինին դարձրել եր համարյա բոլոր ճակատներում դրությունը փրկող մասնագետ, վորտեղ վտանգ եր կախվում կամ կատաստրոֆ եր սպառնում գործին: Այդ-



պես եր Ցարիցինի ճակատում, 3-րդ բանակի Պերմի հատվածում, Լենինգրադում, արևմուտքում, հարավում, ամեն տեղ ու ամենուրեք, — Ստալինը հանդես եր գալիս վորպես գործը քաոսային ու խառնաշփոթ վիճակից դուրս բերող, ռազմաճակատում դրությունը փրկող մարդ»:[2)]

Լենինի և Ստալինի հետ միասին, նրանց ղեկավարությամբ, Կարմիր Բանակի հզորությունն ամրապնդում և սոցիալիստական հայրենիքի թշնամիներին հարվածում եր Լենինի և Ստալինի փորձված զինակից ու աշակերտ Կ. Ցե. Վորոշիլովը: Կարմիր Բանակի շինարարության ամբողջ առաջին էտապը— 1918–1923 թ. թ.— վորն անցավ թշնամիների դեմ մղվող կատաղի մարտերում, ընկեր Վորոշիլովն անց է կացրել քաղաքացիական պատերազմի ճակատներում, շարքային մարտիկների հետ ուս ուսի տված, ջոկատների, իսկ ապա նաև բանակների գլուխն անցած: Ընկեր Վորոշիլովի գործունեյությունն անխզելիորեն կապված է մեր Բանվորա-Գյուղացիական

---

2) Կ. Ցե. Վորոշիլով— «Հոդվածներ և ճառեր», եջ՝ 557

Կարմիր Բանակի ամբողջ պատմության հետ:

Լենինի և Ստալինի հետ միասին, նրանց ղեկավարությամբ, ամրապնդում էր Կարմիր Բանակի հզորությունը և ջախջախում սպիտակ-գվարդիականներին ու ինտերվենտներին Մ. Վ. Ֆրունզեն, որը պատմության մեջ մտել է որպես Կարմիր Բանակի առավել ականավոր զորավարներից ու առաջնորդներից մեկը:

Կարմիր Բանակը, Լենինի ու Ստալինի և նրանց մարտական զինակիցներ Վորոշիլովի, Ֆրունզեյի, Կիրովի, Կույբիշևի, Օրջոնիկիձեյի, Յեգորովի, Բուդյոննու և մյուսների ղեկավարությամբ, քաղաքացիական կատաղի պատերազմի բոցերի մեջ աճում էր և դառնում մարտական ուժ, բաժան-բաժան ջոկատներից վերածվելով գնդերի, բրիգադների, դիվիզիաների ու բանակների, որոնք միաձուլված էին պրոլետարական յերկաթե կարգապահությամբ:



## ԲԱՆՎՈՐԱ-ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՂՈՒ ԱՌԱՋԻՆ ԵՏԱՊԸ (1918–1923 Թ. Թ.)

Խորհրդային իշխանության դեմ մղվող պայքարին մասնակցում էին ներքին հակահեղափոխության ուժերը և համաշխարհային իմպերիալիզմի ինտերվենտերը, որոնք ներկայացված էին 14 պետությունների զորքերով: Ներքին հակահեղափոխության բանակները սուբսիդիա էին ստանում և սպառազինվում էին համաշխարհային իմպերիալիզմի, հատկապես ֆրանսիական ու անգլիական իմպերիալիզմի կողմից:

Քաղաքացիական պատերազմի սկզբնական շրջանը— 1917 թ. նոյեմբերից մինչև 1918 թ. մարտ ամիսը հանդիսանում է Մինսկ – Մոգիլևսկի շրջանում Դովբոր-Մուսնիցկու սպիտակ լեհական կորպուսի դեմ, Դոնում (Կալեդին) և Ուրալում (Դուտովշչինա) բուրժուա- կալվածատիրական հակահեղափոխության դեմ, Ուկրայնական հակահեղափոխական ռադայի և բուրժուա - կալվածատիրական Ռումինիայի դեմ մղվող պայքարի շրջան:

1918 թվի փետրվարի յերկրորդ կեսին

Խորհրդային Ուկրաինայի սահմաններն են ներխուժում գերմանական իմպերիալիզմի բանակները: Կարմիր Բանակն ուժեղ պայքար է մղում գերմանական հափշտակիչների դեմ, ջախջախում է նրանց զինված ուժերը և 1918 թվի վերջերին վռնդում է նրանց Ուկրաինայի սահմաններից:

Գերմանական հափշտակիչների դեմ մղված պայքարում մեծ դեր խաղաց ընկ. Վորոշիլովը: Գլխավորելով Լուգանսկի սոցիալիստական առաջին ջոկատը, նա 1918 թվի մարտի վերջերին խիստ պարտության է մատնում գերմանական հափշտակիչներին և ստիպում է նրանց նահանջել մեծ կորուստներով: Այդ մարտերում զանազան ջոկատներից ստեղծվում է Ուկրայնական 5–րդ հերոսական Կարմիր Բանակը, վորն ընկ. Վորոշիլովի ղեկավարությամբ մեծ արշավ կատարեց Լուգանսկից (այժմ Վորոշիլովգրադ) դեպի Ցարիցին (այժմ Ստալինգրադ): Յերեք ամսվա ընթացքում, բոլոր կողմերից շրջապատված, ընկ. Վորոշիլովի բանակը ճանապարհ եր բաց անում իր համար դեպի Ցարիցին, հետ մղելով գերմանական զորքերի ու սպիտակ կազակային զորամա-



սերի հարվածները: Արդեն այդ մեծ արշավում ընկ. Վորոշիլովն իրեն հանդես բերեց վորպես քաղաքական առաջնորդ, իսկական հեղափոխական զորավար, կազմակերպիչ և միևնույն ժամանակ անձնախիզախ մարտիկ:

Ցարիցինում ընկ. Վորոշիլովը դարձավ
Ընկեր Ստալինը Ցարիցին ուղարկվեց օգնականը: Այստեղ ընկ. Վորոշիլովը նշանակվում է սկզբում Հյուսիսային-Կովկասյան օկրուգի Ռազմական Խորհրդի անդամ, իսկ այնուհետև 10–րդ Կարմիր Բանակի ու ամբողջ Ցարիցինի ճակատի հրամանատար:

Ընկեր Ստալինը Ցարիցին ուղարկվեց Լենինի կողմից, 1918 թ. հունիսի սկզբներին, վորպես Ռուսաստանի հարավում պարենավորման ամբողջ գործի ղեկավար: Ձեռնարկելով իր աշխատանքին, ընկեր Ստալինը անկանոնության ու քաոսի յե հանդիպում զինվորական գերատեսչության օրգաններում, «...համոզվում է նրա լիակատար անճարակության մեջ, նաև այն բանում, վոր նա իր վորոշ մասով ուղղակի չի ցանկանում հակահարված կազմակերպել քլոխացող հակահեղափոխության

դեմ»[3]): Հիանալի հասկանալով Ցարիցինի հսկայական նշանակությունը, ընկեր Ստալինը մի շարք վճռական միջոցներ է ձեռք առնում թերությունները արմատախիլ անելու ուղղությամբ և փաստորեն դառնում է Ցարիցինի ճակատի բոլոր կարմիր ուժերի ղեկավարը: Կարճ ժամանակում ընկեր Ստալինը հեղափոխական կարգ ու կանոն է հաստատում Ցարիցինում և այն մաքրում է հակահեղափոխությունից: Նա ստեղծում է Ռազմա-Հեղափոխական Խորհուրդ և Արտակարգ Հանձնաժողով, կազմակերպում է Կարմիր Բանակի կանոնավոր զորամասեր, անողոքաբար ջախջախում է դավաճաններին ու մատնիչներին- Հուդա-Տրոցկու կողմից դրված մարդկանց: Շնորհիվ այս բոլոր ձեռնարկումներին, Ցարիցինը դառնում է հեղափոխության անմատչելի ամրոցը:

Ընկեր Ստալինն անմիջականորեն ղեկավարում է նաև զուտ ռազմական գործողությունները: Իր անխորտակելի կամքով

---

[3]) Կ. Յե. Վորոշիլով. «Ստալինը և Կարմիր Բանակը». էջ 7. Զինհրատ, 1937 թ.



ու հավատով դեպի հաղթանակը, նա ոգեվորում է կարմիր բանակային գնդերը և հաղթանակից-հաղթանակ է տանում նրանց: Դրությունը Ցարիցինի ճակատում այդ ժամանակ ծայրահեղորեն ծանր էր: Կրասնովի սպիտակ զորամասերը փորձում էին կենտրոնացված հարվածով կարմիր գնդերը հետ շպրտել Վոլգայի մյուս կողմից: Բայց հանճարեղ ստրատեգ ընկեր Ստալինի և նրա զինակից ընկ. Վորոշիլովի ղեկավարությամբ թշնամին ջախջախվեց և շպրտվեց հեռու՝ դեպի Դոնը: Ցարիցինի հերոսական պաշտպանությունը, որն ընդմիշտ կապված է ընկերներ Ստալինի և Վորոշիլովի անունների հետ, հանդիսանում է քաղաքացիական պատերազմի պատմության ամենափայլուն էջերից մեկը, պատերազմ, որ մղեց մեր պանծալի Կարմիր Բանակը բոլշևիկների կուսակցության ղեկավարությամբ:

1918 թվի մայիսի վերջերին խորհրդային իշխանության դեմ հանդես են գալիս չեխոսլովակները, որոնց ղեկավարում էր անգլո-ֆրանսիական իմպերիալիզմը: Չեխոսլովակյան խռովությունը, որը թևավորեց երկրի ներսում եղած բոլոր հա-

կաՀեղափոխական տարրերին, չափազանց լուրջ դրություն ստեղծեց Խորհրդային Հանրապետության Համար: Տարածվելով Վոլգայի յերկարությամբ և Ուրալում, չեխոսլովակները գրավեցին Սամարան, (այժմ Կույբիշև), Սիմբիրսկը (այժմ Ուլյանովսկ), Կազանը, Յեկատերինբուրգը (այժմ Սվերդլովսկ) և սպառնում եյին Նիժնիին,— վորտեղից արդեն Հեռու չեր մինչև Մոսկվա: Բայց 1918 թվի յերկրորդ կեսին չեխոսլովակյան զորքերը ջախջախվեցին Կարմիր Բանակի կողմից:

«1918 թվի վերջերին կատաստրոֆիկ դրություն ստեղծվեց արևելյան ճակատում և Հատկապես յերրորդ բանակի շրջանում, վորն ստիպված յեղավ Հանձնել Պերմը: Շրջապատված լինելով թշնամու կիսաողակով, այդ բանակը նոյեմբերի վերջերին վերջնականապես քայքայված եր»[4]):

Կուսակցության Կենտկոմը, Լենինն արևելյան ճակատ են ուղարկում ընկ. ընկ. Ստալինին և Ձերժինսկուն, Պերմը Հանձնելու պատճառների Հետազոտման Համար:

---

[4]) Կ. Յե. Վորոշիլով — «Ստալինը և Կարմիր Բանակը», եջ 14, Զինհրատ, 1937 թ.:



Այստեղ, ինչպես Ցարիցինում, ընկեր Ստալինն իր գործունեյության ծանրության կենտրոնը փոխադրում է դրությունը վերականգնելու և ճակատն ու թիկունքն ամրապնդելու վրա: Բանակը տրոցկիստական Հովանավորյալներից մաքրելու, այն մարդկանցով և զենքով Համալրելու Հետևանքով, ընկեր Ստալինը կարճ ժամանակամիջոցում վոչ միայն կանգնեցնում է Հակառակորդի Հարձակումը, այլև ապաՀովում է Կարմիր Բանակի Հարձակման անցնելը Պերմի վրա: 1919 թվի Հունվարին Կարմիր Բանակի Հարձակումն սկսվեց ամբողջ արևելյան ճակատում: Յերրորդ բանակի դրությունից ընկեր Ստալինի արած Հետևությունները Հիմք ծառայեցին վոչ միայն արևելյան ճակատի բանակի, այլև ամբողջ Կարմիր Բանակի ամրապնդման ու վերակառուցման Համար:

Պարտություն կրելով խորՀրդային իշխանությունը տապալելու առաջին փորձերի մեջ, Անտանտան 1919 թվի սկզբներին ձեռնարկում է իր առաջին կոմբինացված արշավանքը մեր Հայրենիքի դեմ: Ընկեր Ստալինը տալիս է Անտանտի առաջին արշավանքի Հետևյալ գնաՀատականը՝

«1919 թվականի գարնանը ԽորՀրդային Ռուսաստանի դեմ ձեռնարկ-

վեց Կոլչակի — Դենիկինի — Յուդենիչի կոմբինացված արշավանքը: Գլխավոր հարվածը պետք է հասցներ Կոլչակը, որի հետ Դենիկինը հույս ուներ միանալու Սարատովում, արևելքից Մոսկվայի վրա համատեղ հարձակման համար: Յուդենիչին հանձնարարված էր օժանդակ հարված հասցնել Պետրոգրադին... Սակայն այդ պլանը չհաջողվեց. Կոլչակը հետ շպրտվեց Ուրալից այն կողմ, Դենիկինը կանգնեցվեց Սեյմ գետ — Լիսկի — Բալաշով գծի վրա, Յուդենիչը հետ մղվեց Յամբուրգից այն կողմ: Խորհրդային Ռուսաստանը մնաց ամբողջ ու անվնաս»[5]):

Անտանտի առաջին արշավանքի ջախջախումը ղեկավարելու գործում հսկայական դեր է պատկանում ընկեր Ստալինին:

1919 թվի մարտի սկզբներին արևելյան ճակատում Կոլչակի բանակն անցավ հարձակման:

1919 թվի ապրիլին, կոլչակյան բանակի հարձակման ամենաբարձր զարգացման

[5]) Ի. Ստալին — «Հարավում ստեղծված ռազմական դրության շուրջը», Կ. Ե. Վորոշիլովի՝ «Ստալինը և Կարմիր Բանակը» գրքից. էջ՝ 106—107, Զինհրատ, 1937 թ.:



և Կազանին, Սիմբիրսկին (Ուլյանովսկին) ու Սամարային (Կույբիշևին) սպառնացող վտանգի մոմենտին, արևելյան ճակատի տրոցկիստական ղեկավարությունը լիակատար անընդունակություն ցուցաբերեց վճռական պայքար մղելու Կոլչակի դեմ: Ուստի, Կոլչակի լիկվիդացիայի համար նախատեսնված չորս բանակներից կազմված Հարավային խմբի հրամանատարի պաշտոնում կուսակցությունը նշանակում է հավատարիմ բոլշևիկ - լենինյան Վ. Մ. Ֆրունզեյին: Որպես այդ խմբի Ռազմա - Հեղափոխական Խորհրդի անդամ նշանակվում է նույնպես հավատարիմ բոլշևիկ - լենինյան Վ. Վ. Կույբիշևը:

Անցնելով Հարավային խմբի հրամանատարի պաշտոնին, Ֆրունզեն մշակում է Կոլչակի ջախջախման պլանը, որի հիմքում դրված էին ընկեր Ստալինի ցուցումները և ռազմական հարցերի վերաբերյալ բոլշևիկյան կուսակցության 8-րդ համագումարի որոշումները: Բուգուռուսլան — Ուֆայի օպերացիան, որ կատարվեց Ֆրունզեյի և Կույբիշևի ղեկավարությամբ, ռազմական պատմության մեջ մտավ որպես ամենափայլուն գործողություններից մեկը: Այդ գործողության ժամանակ կոլչակյան բանակը ենթարկվեց կործանիչ

ջախջախման: Զորավարական արվեստի փայլուն օրինակներ ընկ. Ֆրունզեն ցույց տվեց նաև 1919 թվի սեպտեմբերին, կոլչակյան հարավային բանակի շրջապատման ու վոչնչացման գործողությունների ժամանակ:

Կոլչակի հարձակման հետ միաժամանակ, 1919 թվի գարնանը գեներալ Յուդենիչի բանակը նույնպես հարձակման անցավ և սպառնալիք ստեղծեց Պետրոգրադի համար: Մեր կուսակցության Կենտրոնական Կոմիտեն ընկեր Ստալինին ուղարկում է Պետրոգրադի պաշտպանության գործը ղեկավարելու: Ընկեր Ստալինի՝ Պետրոգրադ գալու մոմենտին դրությունն այդ ճակատում չափից դուրս ծանր եր: Հենց Պետրոգրադում հայտնաբերվել, եյին հակահեղափոխական դավադրություններ: Ռազմաճակատում յերկու ամրոց — «Կրասնայա Գորկան» և «Սերայա լոշադը» խռովություն եյին բարձրացրել խորհրդային իշխանության դեմ: Վեց որվա ընթացքում ընկեր Ստալինը բեկում է ստեղծում: Նա մոբիլիզացիայի յե յենթարկում Պետրոգրադի կուսակազմակերպությունն ու բանվորներին՝ Պետրոգրադը պաշտպանելու համար: Նա հասնում է թշնամիների ու դավաճանների վոչնչացման և լիկվիդացիայի յե յենթար-



կում «Կրասնայա Գորկա» և «Սերայա լոշադ» ամրոցներում ծագած խռովությունը: Դրա հետևանքն այն է լինում, վոր մեր զորամասերն անցնում են հարձակման: Պետրոգրադին սպառնացող վտանգը լիկվիդացիայի յե յենթարկվում:

Անտանտի առաջին արշավանքը ջախջախված եր:

«1919 թվի աշնանը ձեռնարկվեց կործանիչ արշավանքի նոր պլան: Կոլչակը, բնականաբար, հաշվից դուրս եր հանված: Ծանրության կենտրոնն արևելքից փոխադրված եր հարավ, վորտեղից Դենիկինը պետք է հասցներ գլխավոր հարվածը: Յուդենիչին, ինչպես գարնանը, հանձնարարված եր ոժանդակ հարված — նոր արշավանք Պետրոգրադի վրա»[6]):

1919 թվի հուլիսի սկզբներին դենիկինականները գրավեցին ամբողջ Ղրիմը, Հյուսիսային — Կովկասը, Դոնբասը, Դոնի մարզը և Ուկրաինայի մի մասը: Հուլիսի 3-ին գեն. Դենիկինը պարծենկոտ դիրեկտիվ է տալիս «Ռուսաստանի սիրտը — Մոսկվան գրավելու» մասին: Մոսկվայի վրա հարձա-

---

[6]) Ի. Ստալին — «Հարավում ստեղծված ռազմական դրության շուրջը». Կ. Յե. Վորոշիլովի «Ստալինը և Կարմիր Բանակը» գրքից. եջ 107. Զինհրատ, 1937 թ.

կում կազմակերպելու համար։ Անտանտան Դենիկինին ուղարկեց տասնյակ հազարավոր հրացաններ, գնդացիրներ ու թնդանոթներ, միլիոնավոր արկեր ու հարյուր միլիոնավոր փամփուշտներ, հարյուր հազարավոր կոմպլեկտ հանդերձանք:

«Դենիկինականների ինքնավստահությունը, — գրում էր ընկեր Ստալինը, — հասավ այնտեղ, վոր Դոնեցի կապիտալիստները դեռևս հոկտեմբերին միլիոնանոց (Նիկոլայի դրամներով) մրցանակ հայտարարեցին կամավորական բանակի այն գնդին, վորն առաջինը կմտնի Մոսկվա»[7]):

Այն մոմենտին, յերբ Դենիկինի սպիտակ բանակները գրավելով Կուրսկը մոտենում էին Օրյոլին, իսկ Յուդենիչը նորից սպառնում էր Պետրոգրադին, բոլշևիկյան կուսակցությունն իր ուշադրությունը կենտրոնացնում է հարավային ճակատի վրա: Ինչպես միշտ, քաղաքացիական պատերազմի ճակատներում պայքարի առավել կրիտիկական մոմենտներին, Լենինը դենիկինյան ճակատն է ուղարկում իր հավատարիմ զինակից ընկեր Ստալինին:

Ընկեր Ստալինը ճակատում հանդիպում է ծանր իրադրության: Ծանոթանալով դր-

---

7) Նույն տեղը:



րությանը, նա անհապաղ վճիռ է ընդունում: Ամենից առաջ նա մերժում է խորհրդային իշխանությանը թշնամաբար տրամադրված շրջաններով հարձակում գործելու տրոցկիստական հին պլանը և առաջադրում է Դենիկինի ջախջախման իր պլանը: Գլխավոր հարվածը ձախ թևից, Ցարիցինից Դոնի տափաստանի վրայով Նովոռոսիյսկին հասցնելու փոխարեն, ինչպես այդ առաջարկվում էր տրոցկիստական պլանով, Ստալինի պլանը հիմնական հարվածի ուղղությունը նախատեսում էր Խարկով—Դոնի ավազան գծով՝ Ռոստովի վրա: Լենինին ուղարկված տոմսակի մեջ ընկեր Ստալինը հետևյալ կերպ է շարադրում իր պլանի բովանդակությունը. «... Նախ՝ այստեղ մենք կունենանք վոչ թշնամական, ընդհակառակը, մեզ համակրող միջավայր, վորը կհեշտացնի մեր առաջխաղացումը. յերկրորդ՝ մենք ստանում ենք կարևորագույն յերկաթուղային ցանց (Դոնեցինը) և Դենիկինի բանակին սնող հիմնական զարկերակը — Վորոնեժ—Ռոստով գիծը... Յերրորդ՝ այդ առաջխաղացմամբ մենք Դենիկինի բանակը հատում ենք յերկու մասի, վորոնցից Կամավորականը թողնում ենք Մախնոյի հոշոտմանը, իսկ կա-

զակային բանակները դնում ենք նրանց թիկունքը մտնելու սպառնալիքի տակ. չորրորդ՝ մենք հնարավորություն ենք ստանում կազակներին կռվեցնելու Դենիկինի հետ, վորը (Դենիկինը) մեր հաջող առաջխաղացման դեպքում կաշխատի կազակային զորամասերը շարժել դեպի արեւմուտք, վորին կազակների մեծամասնությունը դեմ կլինի... Հինգերորդ՝ մենք ստանում ենք ածուխ, իսկ Դենիկինը մնում է առանց ածուխի»[8]):

Ընկեր Ստալինի պլանն ընդունվեց կուսակցության Կենտրոնական Կոմիտեի կողմից: Լենինը հրաման տվեց հին պլանը չեղյալ հայտարարելու մասին: Դենիկինի ջախջախման ստալինյան պլանի իրականացման արդյունքները հայտնի յեն. դենիկինյան հրոսակախմբերը շպրտվեցին Սև ծովը, Ուկրաինան և Հյուսիսային — Կովկասն ազատվեցին սպիտակ գվարդիականներից:

Դենիկինյան բանակների ջախջախման գործում մեծ դեր խաղաց Առաջին հեծյալ բանակը, վորն ստեղծվեց ընկեր Ստալինի

---

[8]) Կ. Յե. Վորոշիլով — «Ստալինը և Կարմիր Բանակը», եջ՝ 25, Զինհրատ, 1937 թ.:



նախաձեռնությամբ, չնայած Տրոցկու կատաղի դիմադրության: «Պետք է նաև կանգ առնել, — գրում է ընկ. Վորոշիլովը, — մի կարևորագույն պատմական մոմենտի վրա, վորը հարավային ճակատում կապված է ընկեր Ստալինի անվան հետ: Յես նկատի ունեմ Հեծյալ բանակի կազմակերպումը: Այդ առաջին փորձն եր հեծյալ դիվիզիաները վերածելու այնպիսի խոշոր միավորման, ինչպիսին է բանակը: Ընկեր Ստալինը տեսնում եր հեծյալ մասսաների հզորությունը քաղաքացիական պատերազմում: Նա կոնկրետ կերպով հասկանում եր նրանց հսկայական նշանակությունը կործանիչ մանևրի համար: Բայց անցյալում վոչ վոք չի ունեցել այնպիսի յուրատեսակ փորձ, ինչպիսին է հեծյալ բանակների գործողությունը: Այդ մասին գրված չի յեղել նաև գիտական աշխատությունների մեջ, ուստի այդպիսի միջոցառումն առաջ եր բերում կամ տարակույս կամ ուղղակի դիմադրություն: Բայց ընկեր Ստալինն այնպիսիներից չե. յեթե նա համոզված եր իր պլանների ոգտակարության և ճշտության մեջ, նա միշտ չեշտակի դնում եր դեպի դրանց իրագործումը... Հեծյալ բանակն ստեղծվեց, չնայած և նույնիսկ հակառակ

կենտրոնի ցանկությունը: Նրա ստեղծման նախաձեռնությունը պատկանում է ընկեր Ստալինին, որը միանգամայն պարզ պատկերացնում էր նման կազմակերպության ողջ անհրաժեշտությունը: Այդ քայլի պատմական հետևանքները լավ հայտնի յեն բոլորին»[9]):

Հեծյալ բանակը կատարելով Դենիկինի ջախջախման ստալինյան պլանը, կործանիչ հարված հասցրեց դենիկինյան հրոսակախմբերին: 1919 թվի դեկտեմբերի 25-ին նա գրավեց Տագանրոգը, իսկ 1920 թվի հունվարի 10-ին — Դոնի Ռոստովը:

Իր բոլոր հերոսական մարտերն Առաջին Հեծյալ բանակն անց է կացրել Կ. Յե. Վորոշիլովի և Ս. Մ. Բուդյոննու անմիջական ղեկավարությամբ: Ընկ. Վորոշիլովը Հեծյալ բանակում նշանակվեց որպես Ռազմա-Հեղափոխական Խորհրդի անդամ 1919 թվի նոյեմբերի 11-ին, այսինքն՝ նրա ստեղծման հենց սկզբից: Ընկ. Վորոշիլովի դերը Հեծյալ բանակում ընկ. Բուդյոննին բնութագրում է այսպես՝ «Նրա անունը սերտորեն կապված է Առաջին հեծյալ բանակի պատմության հետ, որպես մի մարդու անուն,

9) Նույն տեղը, եջ 26—27:



որը կենտրոնական դեմքերից մեկն է հանդիսանում նրա մարտական գործողությունների ղեկավարման և հատկապես կուսակցական – քաղաքական աշխատանքի ղեկավարման մեջ, այդ վերին աստիճանի բարդ և իր կազմով յուրահատուկ մարտական օրգանիզմում»[10]):

Չթառամող փառքով ածեց իրեն քաղաքացիական պատերազմի տարիներին Կ. Յե. Վորոշիլովի զինակից ընկ. Բուդյոննին:

1918 թվի հուլիսին ընկ. Բուդյոննին Ռեմոնտնայա կայարանում հանդիպում է ընկ. Վորոշիլովին: Այդ ժամանակ ընկ. Բուդյոննին ղեկավարում էր հեծյալ դիվիզիոնը, որը հետագայում վերածվեց հեծգնդի, իսկ այնուհետև 4-րդ հեծդիվիզիայի, որը դարձավ առաջին Հեծյալ բանակի կորիզը: Ընկ. Բուդյոննու հետագա մարտական գործունեությունը ծավալվում է Ստալինի և Վորոշիլովի ղեկավարությամբ, Ցարիցինի հերոսական պաշտպանության մեջ: Իսկ 1919 թվի նոյեմբերի 11-ին ընկ. Բուդյոննին հարավային ճակատի Ռազմա-

10) Ս. Մ. Բուդյոննի — «Կարմիր հեծելազոր». Հոդվածների ժողովածու, եջ 40, 1930 թ., Պետհրատ:

Հեղափոխական Խորհրդի վորոշմամբ նշանակվում ե Հեծյալ բանակի հրամանատար: Այն ժամանակվանից, ընկ. Բուդյոննին՝ ընկ. Վորոշիլովի հետ միասին՝ ղեկավարում ե Առաջին հեծյալ բանակի բոլոր գործողությունները, անողոքաբար ջախջախելով մեր հայրենիքի թշնամիներին:

1920 թվի սկզբներին Կարմիր Բանակը Լենինի և Ստալինի ղեկավարությամբ հաղթանակ ձեռք բերեց քաղաքացիական պատերազմի համարյա բոլոր ճակատներում, ջախջախելով Դենիկինի, Կոլչակի, Յուդենիչի և մյուսների սպիտակգվարդիական բանակները: Այդ ժամանակ Կարմիր Բանակն արդեն ուներ ավելի քան յերեք միլիոն մարտիկ: Այդպիսով, Լենինի ցուցումը՝ յերեքմիլլիոնանոց բանակի ստեղծման մասին, կատարված եր:

1920 թվի ապրիլին Անտանտն սկսեց իր յերրորդ արշավանքը, Խորհրդային Ռուսաստանի դեմ ուղղելով պանական Լեհաստանին: «Անտանտի յերրորդ արշավանքն սկսվում ե միանգամայն նոր իրադրության մեջ: Սկսենք նրանից, վոր ի տարբերություն նախորդ արշավանքների, այդ արշավանքը չի կարող կոչվել կոմբինացված,



վորովհետև վոչ միայն հաշվից դուրս յեն ընկել հին դաշնակիցները (Կոլչակ, Դենիկին, Յուդենիչ), այլ նոր դաշնակիցներն ել (յեթե կան այդպիսիք) դեռևս չեն միացել, յեթե չհաշվենք ծիծաղելի Պետլյուրային, «նրա» ծիծաղելի «զորքերով»: Լեհաստանը կանգնած ե Ռուսաստանի դեմ առայժմ մենակ, առանց լուրջ մարտական դաշնակիցների... Ռուսաստանի ներքին դրությունն Անտանտի յերրորդ արշավանքի մոմենտին պետք ե համարել արմատապես փոխված դեպի լավը: Ռուսաստանը վոչ միայն ճանապարհ բաց արեց դեպի հացահատիկի ու վառելիքի շրջանները (Սիբիր, Ուկրաինա, Հյուսիսային Կովկաս, Դոնի Ավազան, Գրոզնի, Բաքու), այլ և ճակատների թիվը կրճատեց վեցից մինչև յերկուսի, դրանով իսկ հնարավորություն ստանալով զորքը կենտրոնացնել Արևմուտքում[11]):

Գլխավոր հարվածը սպիտակլեհական

---

11) Ի. Ստալին — «Անտանտի նոր արշավանքը Ռուսաստանի վրա»: Կ. Յե. Վորոշիլովի՝ «Ստալինը և Կարմիր Բանակը» գրքից — եջ՝ 131 և 132:

բանակներին հասցվեց հարավ-արևմտյան ճակատում, վորը ղեկավարում էին ընկերներ Ստալինը և Յեգորովը: Սպիտակլեհերի դեմ ուղղված մարտական գործողությունների մեջ վճռական դեր խաղաց հերոսական Առաջին հեծյալ բանակը՝ ընկերներ Վորոշիլովի և Բուդյոննու հրամանատարությամբ:

Պանական Լեհաստանի դեմ մղվող պայքարի ամենայեռուն մոմենտին ստեղծվում է Վրանգելի հարձակման վտանգը: Այդ կապակցությամբ, կուսակցության Կենտրոնական Կոմիտեն 1920 թվի օգոստոսի 2-ին վորոշում է կայացնում նոր ճակատ կազմելու մասին և այդ աշխատանքը հանձնարարում է ընկեր Ստալինին: Ընկեր Ստալինը հսկայական յեռանդով ձեռնամուխ յեղավ նոր ճակատի կազմակերպմանը: Նա կազմակերպեց և կիրառեց մի շարք կարևորագույն միջոցառումներ՝ Վրանգելի ջախջախումը մարտական տեսակետից նախապատրաստելու ուղղությամբ: Յեվ միայն հիվանդությունն է ստիպում ընկեր Ստալինին, ընդհատելու այդ աշխատանքը:

Վրանգելի հակահեղափոխական բանակի



վերջնականապես ջախջախման ամենադժվարին ու ամենապատվավոր խնդիրը 1920 թվի նոյեմբերին դրվեց ընկ. Ֆրունզեյի վրա: Բոլորին հայտնի յե, թե նա ինչպես փայլուն կերպով կատարեց այդ խնդիրը, չնայած այն վիթխարի դժվարությունների, վորոնք ուղեկցում էին նրա կատարմանը:

Պերեկոպի ամրությունների վրա գրոհելու գլխավոր դերը դրվեց ընկ. Բլյուխերի հրամանատարությամբ գործող 51-րդ հրաձիգ դիվիզիայի զորամասերի վրա: 1920 թվի նոյեմբերի 8-ին, ժամը 3-ից 30 րոպե անց, այդ զորամասերը գրոհով տիրապետեցին Պերեկոպի թմբին և ընկ. Ֆրունզեյի գլխավորած պանծալի բանակների համար ճանապարհ բաց արին դեպի Ղրիմ:

Մեծ դեր խաղաց ընկ. Բլյուխերը ճապոնական ինտերվենտների ջախջախման գործում: Նրա ղեկավարությամբ հերոսական Կարմիր Բանակը 1922 թվի հոկտեմբերի վերջերին ճապոնական հափշտակիչներին ընդմիշտ դուրս վռնդեց Խորհրդային Հեռավոր-Արևելքից:

Քաղաքացիական պատերազմը վերջացավ: Մեր Կարմիր Բանակն իր կրծքով

պաշտպանեց սոցիալիստական մեծ հեղափոխության նվաճումները:

Կարմիր Բանակը հաղթեց, որովհետև նրան ղեկավարում էր Լենին-Ստալինի մեծ կուսակցությունը: «Այդ նա՛ կոփեց նրա շարքերը բանվորների և գյուղացիների շահերի նվիրվածության ոգով, այդ նա՛ նրան լցրեց անսասան կամքով դեպի պայքարը, միաձուլեց երկաթե կարգապահությամբ և տոկունություն հաղորդեց նրան խոչնդոտների հաղթահարման գործում»[12]:

Կարմիր Բանակը հաղթեց, որովհետև Պետրոգրադի, Մոսկվայի, Ուրալի, Դոնբասի, Բաքվի և այլ վայրերի լավագույն պրոլետարներն արիաբար մարտնչում էին նրա շարքերում: Բանվոր դասակարգը և աշխատավոր գյուղացիությունն իրենց միջից առաջ քաշեցին քաղաքացիական պատերազմի այնպիսի լեգենդար հերոսների, ինչպես Վասիլի Իվանովիչ Չապաևը, Նիկոլայ Ալեքսանդրովիչ Շչորսը, Ալեքսանդր Յակովլևիչ Պարխոմենկոն, Գրիգորիյ Իվանովիչ Կոտովսկին, Սերգեյ Գեորգևիչ Լազոն և

12) Կ. Յե. Վորոշիլով — «Հոդվածներ և ճառեր», էջ 210:



ուրիշները: Մեր հայրենիքի համար մղվող պայքարում անվեհեր զոհված այդ ժողովրդական հերոսների անունները մարդկությունը երբեք չի մոռանա:

Կարմիր Բանակի հաղթանակի կարևորագույն պայմանը հանդիսացավ բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության դաշինքի այն քաղաքականությունը, որ անդավաճանորեն կիրառում էր մեր կուսակցությունը, ինչպես նաև այն համակրանքն ու աջակցությունը, որը ցույց էր տալիս Խորհրդային Ռուսաստանին միջազգային պրոլետարիատը:

Վրանգելի սպիտակգվարդիական բանդաների ջախջախումից հետո, Կարմիր Բանակը ձեռնարկեց զորացրման, որն ինչպես ասում է ընկ. Վորոշիլովը, — «...իրենից ներկայացնում էր տեխնիկան, ծանր ու հիվանդագին մի պրոցես»[13]: Կարմիր Բանակի թվական կազմը 1920 թվի վերջին հասավ 5,5 միլիոն հոգու: Պարզ է, որ այդպիսի հսկայական մասսայի զորացրման համար պահանջվում էր երկրի բոլոր ուժերի հսկայական լարում, հատկապես այն ժա-

13) Կ. Յե. Վորոշիլով — «Հոդվածներ և ճառեր», էջ 560:

մանակվա ծանր տնտեսական փլուզման պայմաններում: Զորացրումը փաստորեն շարունակվում էր մինչև 1924 թվի սկիզբը:

Դրանով վերջանում է Կարմիր Բանակի պատմական ուղու առաջին էտապը, որը լի յե սպիտակգվարդիականների ու ինտերվենտների դեմ մղված հերոսական ու հաղթական պայքարով:

## ԲԱՆՎՈՐԱ-ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՂՈՒ ՅԵՐԿՐՈՐԴ ԷՏԱՊԸ (1924—28 Թ. Թ.)

Խորհրդային պետության զինված ուժերի շինարարության յերկրորդ էտապում (1924—1928 թ.թ.) ընկերներ Ֆրունզեն և Վորոշիլովը վիթխարի աշխատանք կատարեցին բանակի վերակառուցման, նրա մարտական պատրաստականության ուժեղացման ուղղությամբ:

«1924—1928 թ. թ. աշխատանքների հետևանքով, Կարմիր Բանակն ստացավ ժամանակակից կայուն կազմակերպում, կարգավորեց անձնակազմի կանոնավոր կոմպլեկտավորումը, սահմանեց ծառայության ժամկետներ, ստացավ ժամանակակից բոլոր կանոնադրությունները, սիստեմատի-



զացիայի ենթարկեց և կանոնավորեց շարքային մարտիկների ու պետկազմի մարտական պատրաստությունը, ծավալեց բարձրագույն ու միջնակարգ ռազմական ուսումնական հաստատությունների ցանցը:

Կազմակերպչորեն հետամնաց բանակից, Կարմիր Բանակը 1928 թվին վերածվեց ժամանակակից բանակի, վորը վերջին պատերազմների փորձից իր համար արեց բոլոր կազմակերպչական վարժական հետևությունները»[14]):

Զինված ուժերի շինարարության յերկրորդ էտապի հաջող ավարտման հետևանքով, Կարմիր Բանակն իր տասնամյա հոբելյանին (1928 թ.) ներկայացնում էր հզոր մարտական ուժ, վորն ընդունակ էր կործանիչ հակահարված հասցնելու ամեն մի թշնամու: 1929 թվին Կարմիր Բանակը մեկ անգամ ևս գործնականորեն հաստատեց, վոր նա հանդիսանում է խորհրդային պետության միանգամայն հուսալի զինված հենարանը: Հեռավոր-Արևելքում նրա առաջավոր ջոկատներից մեկը— Հեռավոր-Արևելյան Կարմրադրոշ Հատուկ Բանակը—

14) Նույն տեղը՝ էջ 565:

մանակվա ծանր տնտեսական փլուզման պայմաններում: Զորացրումը փաստորեն շարունակվում էր մինչև 1924 թվի սկիզբը:

Դրանով վերջանում է Կարմիր Բանակի պատմական ուղու առաջին էտապը, որը լի յե սպիտակգվարդիականների ու ինտերվենտների դեմ մղված հերոսական ու հաղթական պայքարով:

## ԲԱՆՎՈՐԱ-ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՂՈՒ ՅԵՐԿՐՈՐԴ ԷՏԱՊԸ (1924—28 Թ. Թ.)

Խորհրդային պետության զինված ուժերի շինարարության յերկրորդ էտապում (1924—1928 թ.թ.) ընկերներ Ֆրունզեն և Վորոշիլովը վիթխարի աշխատանք կատարեցին բանակի վերակառուցման, նրա մարտական պատրաստականության ուժեղացման ուղղությամբ:

«1924—1928 թ. թ. աշխատանքների հետևանքով, Կարմիր Բանակն ստացավ ժամանակակից կայուն կազմակերպում, կարգավորեց անձնակազմի կանոնավոր կոմպլեկտավորումը, սահմանեց ծառայության ժամկետներ, ստացավ ժամանակակից բոլոր կանոնադրությունները, սիստեմատի-



ցացիայի յենթարկեց և կանոնավորեց շարքային մարտիկների ու պետկազմի մարտական պատրաստությունը, ծավալեց բարձրագույն ու միջնակարգ ռազմական ուսումնական հաստատությունների ցանցը:

Կազմակերպչորեն հետամնաց բանակից, Կարմիր Բանակը 1928 թվին վերածվեց ժամանակակից բանակի, որը վերջին պատերազմների փորձից իր համար արեց բոլոր կազմակերպչական վարժական հետևությունները»[14]:

Զինված ուժերի շինարարության յերկրորդ էտապի հաջող ավարտման հետևանքով, Կարմիր Բանակն իր տասնամյա հոբելյանին (1928 թ.) ներկայացնում էր հզոր մարտական ուժ, որն ընդունակ էր կործանիչ հակահարված հասցնելու ամեն մի թշնամու: 1929 թվին Կարմիր Բանակը մեկ անգամ ևս գործնականորեն հաստատեց, որ նա հանդիսանում է խորհրդային պետության միանգամայն հուսալի զինված հենարանը: Հեռավոր-Արևելքում նրա առաջավոր ջոկատներից մեկը— Հեռավոր-Արևելյան Կարմրադրոշ Հատուկ Բանակը—

[14]) Նույն տեղը՝ էջ 565:

գործնականում ապացուցեց իր մարտական պատրաստականությունն ու քաղաքական կայունությունը:

Հրամանատարական և պետկազմը— հիմնական օղակը մեր զինված ուժերի սիստեմում, կարևորագույն կազմակերպող ուժ է: Մեր կուսակցությունը, Կարմիր Բանակի կազմակերպման սկզբից հենց, բոլոր միջոցները ձեռք էր առնում բանվորներից ու գյուղացիներից հրամանատարների կադրեր ստեղծելու համար: Կարմիր Բանակի 15-ամյակին մենք ունեյինք, ինչպես ասաց ընկ. Վորոշիլովը,— ամբողջապես մեր, Լենին-Ստալինի գործին անսահմանորեն նվիրված հրամանատարական կազմը: Այդ ժամանակ իրենց վորակավորմամբ ևս մեր հրամանատարները կանգնած եյին բարձր մակարդակի վրա:

## ԲԱՆՎՈՐԱ - ԳՅՈՒՂԱՑԻԱԿԱՆ ԿԱՐՄԻՐ ԲԱՆԱԿԻ ՊԱՏՄԱԿԱՆ ՈՒՂՈՒ ՅԵՐՐՈՐԴ ԵՏԱՊԸ (1928—1937 Թ. Թ.)

Առաջին հնգամյակի տարիներին, Կարմիր Բանակի տեխնիկական վերակառուցման կապակցությամբ, շատ բան արվեց ավիացիայի, զրահատանկային զո-



րամասերի, հրետանու և զորքի այլ հատուկ տեսակների հրամանատարական ու ինժեներա - տեխնիկական կազմի նախապատրաստման ասպարեզում: 1932 թվին ստեղծվեցին մի շարք նոր, հատուկ ակադեմիաներ: Միջին պետկազմի պատրաստման համար աճեցին հատուկ դպրոցներ_ավիացիոն, տանկային, ինժեներային և տեխնիկական:

Ստալինյան առաջին հնգամյակի փայլուն կատարման հետևանքով «... թույլ և պաշտպանության համար անպատրաստ յերկրից, Խորհրդային Միությունը վերածվեց պաշտպանունակության իմաստով հզոր յերկրի, այնպիսի յերկրի, վորը պատրաստ է ամեն տեսակ անակնկալներին, յերկրի, վորն ընդունակ է մասսայական մաշտաբով արտադրելու պաշտպանության բոլոր ժամանակակից զենքերը և արտաքին հարձակման դեպքում մատակարարել դրանցով իր բանակը»[15]:

Բոլշևիկյան կուսակցությունը, ժողովուրդների մեծ առաջնորդ ընկեր Ստալինը,

---

[15]) Ի. Ստալին — «Առաջին հնգամյակի արդյունքները», եջ 15, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի Կուսհրատ, 1938 թ.:

մինչ բացառիկ ուշադրություն են հատ-
կացրել և հատկացնում են՝ Կարմիր Բա-
նակին ու Կարմիր Նավատորմիղին, մեր
սոցիալիստական հայրենիքի պաշտպանունա-
կության ուժեղացմանը: Առաջին հնգամյա-
կի տարիներին հսկայական աշխատանք կա-
տարվեց Կարմիր Բանակի տեխնիկական վե-
րակառուցման և այն տեխնիկական մեծ
հետամնացությունը վերացնելու բնագավա-
ռում, վորն ամենաթույլ տեղն եր կազմում
Խորհրդային Միության պաշտպանության
մեջ: «Այդ աշխատանքի հետևանքով, Կար-
միր Բանակը հետամնաց բանակից վերած-
վեց ժամանակակից, առաջավոր բանակի:
Արդյունաբերության մեջ ստեղծվեց ար-
տադրական այնպիսի բազա, վորը կարող է
արտադրել պայքարի ժամանակակից բոլոր
տեխնիկական միջոցները: Կարմիր Բանակի
մարտունակությունը վիթխարի չափով ա-
ճեց; անչափ աճեց Խորհրդային Միության
պաշտպանությունը»[16]):

Ստալինյան յերկու հնգամյակի տարինե-
րին Խորհրդային Միությունը վերածվեց
հզոր սոցիալիստական պետության՝ բարձր

---

16) Կ. Ցե. Վորոշիլով — «Հոդվածներ և ճառեր», եջ 571:



զարգացած արդյունաբերությամբ ու մեքե-
նայացված սոցիալիստական գյուղատնտե-
սությամբ: Սոցիալիստական շինարարու-
թյան հաջողությունների հետ միաժամա-
նակ, մեր ժողովրդական տնտեսության աճ-
ման հետ սերտորեն կապված, շարունակում
եր առաջ գնալ Կարմիր Բանակը, բարելա-
վելով իր սոցիալական կազմը, բարձ-
րացնելով ամբողջ անձնակազմի վորակավո-
րումը և ել ավելի հարստանալով ժամանա-
կակից տեխնիկական միջոցներով: Վերջին
տարիների ընթացքում հազարավոր մարտիկ-
ներ, հրամանատարներ ու քաղաշխատող-
ներ, զինինժեներներ ու զինտեխնիկներ,
մարտական ու քաղաքական պատրաստու-
թյան ասպարեզում ունեցած հիանալի հա-
ջողությունների, անձնազոհ աշխատանքի,
պրոլետարական հեղափոխության գործին
նվիրված լինելու համար Խորհրդային կա-
ռավարության կողմից նշվեցին բարձր պար-
գևներով— ԽՍՀ Միության շքանշաններով:
Կարմիր Բանակն այժմ ունի ժողովրդի
տասնյակ լավագույն զավակներ— Խորհըր-
դային Միության հերոսներ, վորոնցով
պարծենում է մեր ամբողջ յերկիրը:

Ստալինյան հնգամյակների կատարման

հետ միասին շարունակում էր աճել ու ամրապնդվել Խորհրդային Միության Ռազմա-Ծովային Նավատորմիղը: Վերջին տարիների ընթացքում ամրապնդվեցին և ուժեղացվեցին Բալտիական ու Սև ծովերի ծովային ուժերը, ստեղծվեց մեր ծովային սահմանների հուսալի պաշտպանություն՝ Հյուսիսում և Խաղաղ օվկիանոսում: 1937 թվի ամառը և աշնանը տեղի ունեցած հեռավոր նավարկության վարժությունների ժամանակ մեր կարմիրնավատորմայինները ցույց տվին բարձր վարժվածություն և խիզախություն: Մեր նավատորմիղն ունի յերիտասարդ, լավ ուսուցված և սոցիալիստական հայրենիքին անսահմանորեն նվիրված յերիտասարդ կադրերի առաջքաշման ամենահարուստ աղբյուր:

Հաշվի առնելով Ռազմա-Ծովային Նավատորմիղի հետագա զարգացման անհրաժեշտությունը, ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը 1938 թվի հունվարի 15-ին հաստատեց Ռազմա-Ծովային Նավատորմիղի Ժողովրդական Կոմիսարիատի կազմակերպումը: Այդ միջոցառումը կապահովի Ռազմա-Ծովային Նավատորմիղի— մեր հայրենիքի



զինված ուժերի պանծալի ջոկատի հետագա աճումն ու ամրապնդումը:

Կարմիր Բանակը— բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության անխորտակելի ուժը, արդեն քսան տարի յե ինչ կանգնած է մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանության դիրքում: Լենին-Ստալինի կուսակցության, նրա Կենտրոնական Կոմիտեյի և Խորհրդային Կառավարության իմաստուն քաղաքականությունը մեր յերկրի աշխատավորների համար ապահովեց 16 տարվա խաղաղ սոցիալիստական աշխատանք: Իր քսանամյակին Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակը դարձել է ամենահզոր բանակն աշխարհում, վորի ուժն ու հզորությունը չեն համարձակվում ժխտել նույնիսկ մեր թշնամիները:

Մեր պանծալի Կարմիր Բանակն ուժեղ է վո՛չ միայն նվիրված և լավ ուսուցված կարմիրբանակային ու հրամանատարական կադրերով, վո՛չ միայն ժամանակակից սպառազինմամբ: Կարմիր Բանակն ուժեղ է նաև իր կոմունիստական միաձուլմամբ, կուսակցական-կոմյերիտական հզոր կազմակերպությունների առկայությամբ, վորոնք

հետ միասին շարունակում էր աճել ու ամրապնդվել Խորհրդային Միության Ռազմա-Ծովային Նավատորմիղը: Վերջին տարիների ընթացքում ամրապնդվեցին և ուժեղացվեցին Բալտիական ու Սև ծովերի ծովային ուժերը, ստեղծվեց մեր ծովային սահմանների հուսալի պաշտպանություն՝ Հյուսիսում և Խաղաղ օվկիանոսում: 1937 թվի ամառը և աշնանը տեղի ունեցած հեռավոր նավարկության վարժությունների ժամանակ մեր կարմիրնավատորմայինները ցույց տվին բարձր վարժվածություն և խիզախություն: Մեր նավատորմիղն ունի յերիտասարդ, լավ ուսուցված և սոցիալիստական հայրենիքին անսահմանորեն նվիրված յերիտասարդ կադրերի առաջքաշման ամենահարուստ աղբյուր:

Հաշվի առնելով Ռազմա-Ծովային Նավատորմիղի հետագա զարգացման անհրաժեշտությունը, ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը 1938 թվի հունվարի 15-ին հաստատեց Ռազմա-Ծովային Նավատորմիղի Ժողովրդական Կոմիսարիատի կազմակերպումը: Այդ միջոցառումը կապահովի Ռազմա-Ծովային Նավատորմիղի— մեր հայրենիքի



զինված ուժերի պանծալի ջոկատի հետագա աճումն ու ամրապնդումը:

Կարմիր Բանակը— բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության անխորտակելի ուժը, արդեն քսան տարի է, ինչ կանգնած է մեր սոցիալիստական հայրենիքի պաշտպանության դիրքում: Լենին-Ստալինի կուսակցության, նրա Կենտրոնական Կոմիտեյի և Խորհրդային Կառավարության իմաստուն քաղաքականությունը մեր յերկրի աշխատավորների համար ապահովեց 16 տարվա խաղաղ սոցիալիստական աշխատանք: Իր քսանամյակին Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակը դարձել է ամենահզոր բանակն աշխարհում, որի ուժն ու հզորությունը չեն համարձակվում ժխտել նույնիսկ մեր թշնամիները:

Մեր պանծալի Կարմիր Բանակն ուժեղ է ո՛չ միայն նվիրված և լավ ուսուցված կարմիրբանակային ու հրամանատարական կադրերով, ո՛չ միայն ժամանակակից սպառազինմամբ: Կարմիր Բանակն ուժեղ է նաև իր կոմունիստական միաձուլմամբ, կուսակցական-կոմյերիտական հզոր կազմակերպությունների առկայությամբ, որոնք

կազմում են մեր զինված ուժերի պողպատե կմախքը: Կարմիր Բանակի հզորությունը հիմնված է ժողովրդի հետ նրա ունեցած անխզելի կապի վրա: Կարմիր Բանակի ռեզերվը— ամբողջ խորհրդային ժողովուրդն է, որը միաձույլ համախմբված է Լենին-Ստալինի կուսակցության շուրջը, պատրաստ է ամեն րոպե տալու իր բոլոր ուժերն ու կյանքը հայրենիքի պաշտպանության համար, սոցիալիզմի նվաճումների համար:

ԽՍՀՄ ժողովուրդներն անձնազոհ վերպով սիրում են իրենց հայրենիքը: Հոկտեմբերյան պրոլետարական Մեծ Հեղափոխության մեծագույն նվաճումները, սոցիալիզմի վերջնական հաղթանակը ԽՍՀՄ-ում, որոնք իրենց արտահայտությունն ու ամրապնդումը գտան Ստալինյան Սահմանադրության մեջ, խորհրդային ժողովրդին տվին ունևոր ու կուլտուրական, յերջանիկ ու հրճվալից կյանք: ԽՍՀՄ-ում սոցիալիզմի վերջնական հաղթանակի բազայի վրա ստեղծվեց խորհրդային ժողովրդի քաղաքական ու բարոյական՝ անցյալում յերբեք չտեսնված՝ միասնություն: ԽՍՀՄ-ում միա



ցել են յերկու մեծ ուժեր — ժողովուրդը և կոմունիզմը:

Խորհրդային հայրենասիրությունը՝ միացած մարտական տեխնիկայի, գիտելիքների, մեր յերկրի հարստությունների հետ— հանդիսանում է այնպիսի անխորտակելի մի ուժ, որին պարտվելով կջարդի իր գլուխը ամեն մի թշնամի, որը կփորձի հարձակվել սոցիալիզմի յերկրի վրա:

Բայց ընկեր Ստալինը մեզ սովորեցնում է յերբեք չմեծամտել: Մեր յերկիրը—աշխարհում միակ սոցիալիստական պետությունն է: Մենք բոլոր կողմերից շրջապատված ենք այնպիսի պետություններով, որտեղ դեռ իշխանության գլուխն են կանգնած կապիտալիստներն ու կալվածատերերը: Մենք գիտենք, որ կապիտալիստական աշխարհը, որին հոշոտում են հակասությունները, կատաղի պատրաստվում է համաշխարհային նոր պատերազմի: Ֆաշիստական ագրեսորները իրենց գիշատիչ հայացքներն ուղղում են դեպի ԽՍՀՄ: Նրանք մեր յերկիրն են ուղարկում վնասարարների, լրտեսների, դիվերսանտների ու մարդասպանների: Նրանք իրենց գործակալության—տրոցկիստների ու բուխարինական-

ների, տուխաչևսկիների ու գամարնիկների— ժողովրդի այդ ամենավոխերիմ թշնամիների օգնությամբ փորձում էին քայքայել Կարմիր Բանակի հզորությունը, թուլացնել մեր թիկունքը և դրանով իսկ իրենց համար հեշտացնել ԽՍՀՄ վրա ռազմական հարձակում գործելու պայմանները:

Սակայն համաշխարհային ֆաշիզմը սխալվեց իր հաշիվների մեջ: Նրա տրոցկիստական-բուխարինական գործակալությունը, այդ դավաճանական լեշը, որը լաքեյաբար ծառայում էր կապիտալիզմին, ջախջախված է: Ջախջախված և ոչնչացված են հայրենիքի նողկալի դավաճաններն ու մատնիչները: Բայց այդ բնավ չի նշանակում, որ ֆաշիստական հետախուզություններն այսուհետև ևս լրտեսներ, դիվերսանտներ, վնասարարներ ու մարդասպաններ չեն ուղարկի մեր յերկիրը:

Ուստի, անհրաժեշտ է ուժեղացնել բոլշևիկյան զգաստությունը, ավելի աչալուրջ հսկել սոցիալիզմի թշնամիների, ժողովրդի թշնամիների նենգ ոտնձգություններին:

Մեր Կարմիր Բանակը, ինչպես և ամբողջ խորհրդային ժողովուրդը, պատրաստ է



միշտ խաղաղ ապրել բոլոր յերկրների հետ: Բայց Կարմիր Բանակը նաև պատրաստ է ամեն րոպե ջախջախելու թշնամուն, որը կհանդգնի հարձակվել բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության վրա: Կարմիր Բանակը, որը սերտորեն համախմբված է բոլշևիկյան կուսակցության շուրջը, սիրելի Ստալինի և իր յերկաթե ժողկոմ ընկեր Վորոշիլովի շուրջը, կուսակցության առաջին իսկ կոչով, ամբողջ խորհրդային ժողովրդի հետ միասին, հանդես կգա ի պաշտպանություն սոցիալիստական հայրենիքի:

Լկտի թշնամին պատրաստվում է հարձակվել մեր հայրենիքի վրա: Ուստի, մենք պետք է արթուն լինենք, պետք է պատրաստ լինենք ամեն րոպե կործանիչ հարված հասցնելու թշնամուն, որտեղից էլ նա յերևա:

Խորհրդային ժողովուրդը Լենինի-Ստալինի կուսակցության և Խորհրդային կառավարության ղեկավարությամբ, առանց ձեռքերը ծալելու, կամրապնդի մեր հայրենիքի պաշտպանունակությունը: ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի՝ վերջերս տեղի ունեցած առաջին Նստաշրջանը բացառիկ ուշադրու-

ների, տուխաչևսկիների ու գամարնիկների–ժողովրդի այդ ամենավոխերիմ թշնամիների օգնությամբ փորձում եյին քայքայել Կարմիր Բանակի հզորությունը, թուլացնել մեր թիկունքը և դրանով իսկ իրենց համար հեշտացնել ԽՍՀՄ վրա ռազմական հարձակում գործելու պայմանները:

Սակայն համաշխարհային Փաշիզմը սխալվեց իր հաշիվների մեջ: Նրա տրոցկիստական-բուխարինական գործակալությունը, այդ դավաճանական լեշը, վորը լաքեյաբար ծառայում եր կապիտալիզմին, ջախջախված ե: Ջախջախված և վոչնչացված են հայրենիքի նողկալի դավաճաններն ու մատնիչները: Բայց այդ բնավ չի նշանակում, վոր Փաշիստական հետախուզություններն այսուհետև ել լրտեսներ, դիվերսանտներ, վնասարարներ ու մարդասպաններ չեն ուղարկի մեր յերկիրը:

Ուստի, անհրաժեշտ ե ուժեղացնել բոլշևիկյան զգաստությունը, ավելի աչալուրջ հսկել սոցիալիզմի թշնամիների, ժողովրդի թշնամիների նենգ վոտնձգություններին:

Մեր Կարմիր Բանակը, ինչպես և ամբողջ խորհրդային ժողովուրդը, պատրաստ ե



միշտ խաղաղ ապրել բոլոր յերկրների հետ: Բայց Կարմիր Բանակը նաև պատրաստ ե ամեն րոպե ջախջախելու թշնամուն, վորը կհանդգնի հարձակվել բանվորների ու գյուղացիների սոցիալիստական պետության վրա: Կարմիր Բանակը, վորը սերտորեն համախմբված ե բոլշևիկյան կուսակցության շուրջը, սիրելի Ստալինի և իր յերկաթե ժողկոմ ընկեր Վորոշիլովի շուրջը, կուսակցության առաջին իսկ կոչով, ամբողջ խորհրդային ժողովրդի հետ միասին, հանդես կգա ի պաշտպանություն սոցիալիստական հայրենիքի:

Լկտի թշնամին պատրաստվում ե հարձակվել մեր հայրենիքի վրա: Ուստի, մենք պետք ե արթուն լինենք, պետք ե պատրաստ լինենք ամեն րոպե կործանիչ հարված հասցնելու թշնամուն, վորտեղից ել նա յերևա:

Խորհրդային ժողովուրդը Լենինի-Ստալինի կուսակցության և Խորհրդային կառավարության ղեկավարությամբ, առանց ձեռքերը ծալելու, կամրապնդի մեր հայրենիքի պաշտպանունակությունը: ԽՍՀՄ Գերագույն Խորհրդի՝ վերջերս տեղի ունեցած առաջին նստաշրջանը բացառիկ ուշադրու-

թյան հատկացրեց մեր յերկրի պաշտպանական հզորության հետագա ամրապնդմանը: Որեցոր ավելի ու ավելի յեն աճում ու ամրանում սոցիալիզմի յերկրի զինված ուժերը: Յեվ յեթե թշնամին կհանդգնի հարձակվել մեզ վրա, ապա թող նա գիտենա, վոր «...Մեր Բանակը գոյություն ունի վո՛չ հարձակման համար, բայց միայն մինչև մեր Հայրենիքի վրա թշնամու հարձակման մոմենտը: Նա կլինի ամենահարձակվողը՝ յերբևիցե հարձակված բոլոր բանակներից, յեթե թշնամին նրան ստիպի այդ բանին»[17]):

---

[17]) Կ. Յե. Վորոշիլով — Ճառ Կարմիր հրապարակում, 1937 թ. նոյեմբերի 7-ին: «Պրավդա», 10 նոյեմբերի, 1937 թ.:



Ֆ. ԿՈՒԶՆԵՑՈՎ

# ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՍՊԱՌԱԶԻՆՈՒՄՆԵՐԸ

Քսան տարի յե, ինչ գոյություն ունի Բանվորա-Գյուղացիական Կարմիր Բանակը: Վոսկե տառերով գրի յեն առնված քաղաքացիական պատերազմի պատմության մեջ նրա հերոսական հաղթանակները: Ջախջախելով սպիտակ գվարդիականներին և դուրս շպրտելով ինտերվենտներին խորհրդային հողից, Կարմիր Բանակը պահպանեց մեր հայրենիքի ժողովուրդների խաղաղ աշխատանքին ու յերջանիկ կյանքին: Ստալինյան հնգամյակները նրան զինեցին առաջնակարգ զենքով, ամենանորագույն մարտական միջոցներով: Համառորեն, հսկայական խան-

վարությամբ ԲԳԿԲ ամբողջ անձնակազմը աշխատել և աշխատում է ռազմական ու քաղաքական գիտելիքների մակարդակը բարձրացնելու վրա: Վայելելով խորհրդային ժողովրդի ամենայն աջակցությունը և ջերմ սերը, լինելով նրա անբաժանելի մասը, Կարմիր Բանակը դարձավ ամենաառաջավոր, ամենահզոր բանակն աշխարհում:

Թշնամիները փորձելով թուլացնել մեր յերկրի պաշտպանունակությունը, սողոսկեցին նաև Կարմիր Բանակի շարքերը: Տրոցկիստական-բուխարինական բանդիտները, ֆաշիստական հետախուզությունների լրտեսները, հույս ունեյին, վոր նրանց կհաջողվի ներքուստ կոտրել Կարմիր Բանակի հզորությունը: Բայց նրանք դաժանորեն սխալվեցին իրենց հաշիվների մեջ: Պրոլետարական դիկտատուրայի պատժող ձեռքը ջախջախեց թշնամիների լրտեսական բները: Մաքրվելով ֆաշիստական ագենտուրայից, Կարմիր Բանակը դարձավ է՛լ ավելի ուժեղ, է՛լ ավելի սերտորեն համախմբվեցին նրա շարքերը Լենինի-Ստալինի կուսակցության շուրջը: Վորպես անխորտակելի ժայռ, կանգնած է նա սոցիալիզմի նվաճումների պաշտպանության դիրքում, պատ-



րաստ կործանիչ հարվածով պատասխանելու պատերազմի հրձիգների հարվածին:

Դեռ յերբեք միջազգային իրադրությունը չի յեղել այնպես լարված, ինչպես ներկայումս: Պատրաստվելով հարձակվել Խորհրդային Միության վրա, ֆաշիստական ագրեսորներն արդեն պատերազմ են սկսել իսպանական ու չինական ժողովուրդների դեմ: Իտալո-գերմանական ինտերվենցիան Իսպանիայում և Ճապոնիայի հափշտակողական պատերազմը Չինաստանի դեմ, ահեղ նախազդուշակն են հանդիսանում համաշխարհային նոր հրդեհի, վոր ձգտում են բորբոքել ֆաշիստները: Այն մասին, թե ինչպիսի պատերազմի յեն պատրաստվում իմպերիալիստական պետությունները, կարելի յե դատել այն թափով, վոր վերջին տարիներս ընդունել է կապիտալիստական յերկրների սպառազինումը:

## ՊԱՏԵՐԱԶՄԱԿԱՆ ԾԱԽՍԵՐԸ

Կապիտալիստական պետությունների ռազմական բյուջեները դեռևս չեն հանդիսանում նրանց սպառազինման թափի բացարձակ ցուցանիշը: Համարյա բոլոր մինիստրությունների և գերատեսչությունների

գծով, վորոնք ուղղակի կապ չունեն պատերազմի նախապատրաստման հետ, միջոցներ են հատկացվում ռազմական ծախսերի համար: Ստրատեգիական ճանապարհների շինարարությունը, օրինակ, կատարվում է ի հաշիվ հաղորդակցության ճանապարհների մինիստրությունների, յերիտասարդության ռազմական ուսուցումը՝ ի հաշիվ լուսավորության մինիստրությունների, պարենամթերքի պատերազմական պաշարների հայթայթումը՝ պարենավորման մինիստրությունների հատկացումների հաշվին և այլն: Ֆաշիստական պետություններում ռազմական բյուջեներն ամենևին չեն հրապարակվում, վորովհետև նրանք կլանում են ժողովրդական ունեցվածքի առյուծի բաժինը:

Այնուամենայնիվ, տարբերկրյա մամուլի հրապարակած վորոշ թվերը բավականաչափ ցուցանշական են: Ամերիկյան «Կարրենտ Խիստորի» ժուռնալն այդ առթիվ գրում է հետևյալը.

«Գերմանական հետազոտական ինստիտուտի բյուլետենի տեսության համաձայն, ռազմական ծախսերն ամբողջ աշխարհում 1913 թվի 10 միլիարդ մարկից, 1936 թը-



վին աճել են մինչև 36 միլիարդ մարկի: Սակայն այդ թվի մեջ Գերմանիայի ռազմական ծախսերը չեն մտնում, վորովհետև տեսության մեջ մատնանշված է, վոր Գերմանիան այդ հարցում գրավում է հատուկ դրություն: 1934 թվից հետո Գերմանիան իր սպառազինումների տեսակետից հասավ Ֆրանսիայի մակարդակին: Գերմանիան այն ժամանակվանից բանակի վրա ծախսել է լրացուցիչ կերպով 27 միլիարդ մարկ»:

Անգլիական «Բենկեր» ժուռնալի ասելով, Գերմանիան վերջին չորս տարվա ընթացքում սպառազինումների վրա ծախսել է 31,1 միլիարդ մարկ, ըստ վորում միայն 1936—37 բյուջետային տարում Գերմանիայի ռազմական ծախսերը հասան վիթխարի գումարի— 12,6 միլիարդ մարկ: Հասկանալի յե, վոր այդ թվերը վոչ մի համեմատության մեջ դրվել չեն կարող մինչ 1914 թ. շրջանի ռազմական բյուջեների թվերի հետ:

Վորոշել կապիտալիստական պետությունների ռազմական ծախսերի ընդհանուր գումարը, այժմ չափազանց դժվար է, քանի վոր ֆաշիստական յերկրներն արդեն գըտ-

նըվում են պատերազմի վիճակում: Պատերազմի մեկ օրը Ջինաստանում, Ճապոնիայի վրա նստում է հինգ միլիոն իեն: Օտարերկըրյա մամուլի տվյալներով, Գերմանիան և Իտալիան իսպանական հերոս ժողովրդի դեմ պայքարելու համար Իսպանիա յեն ուղարկել 1000 ինքնաթիռ, 500 տանկ, 1500 հրանոթ, 170 հազար զորք: Այդպիսով, հարկ չկա արդյունքներ ամփոփելու, ցույց տալու համար կապիտալիստական պետությունների ռազմական ծախսերի վիթխարի աճումը:

## ԶԻՆՎԱԾ ՈՒԺԵՐԻ ԹՎԱԿԱՆ ԿԱԶՄԻ ԱՃՈՒՄԸ

Զինված ուժերի թվական կազմի աճում տեղի ունի բոլոր կապիտալիստական պետություններում: Յեթե վերցնենք օրինակ, մինչև 1914 թ. խաղաղ ժամանակվա բանակների թվական կազմը ԱՄՆ-ում և յեվրոպական այն պետություններում, վորոնք մասնակցում էյին համաշխարհային պատերազմին (բացառությամբ Ռուսաստանի), ապա այդ հավասար եր 3400 հազար հոգու: Այժմ նույն այդ պետությունների տերիտորիայում զենքի տակ գտնվում են մոտ մեկ միլիոն հոգով ավելի: Ըստ վորում, միայն



ֆաշիստական յերկու պետությունների— Գերմանիային և Իտալիային— բաժին է ընկնում 1,5 միլիոն մարդ: Արդեն այս թվերը խոսում են իրենց մասին: Սակայն այդ վերաբերում է միայն կանոնավոր զորքերին: Դրանց զուգընթաց, համարյա բոլոր կապիտալիստական պետություններում կան վոչ կանոնավոր զինվորական միավորումներ, վորոնց թիվը ֆաշիստական պետություններում, օրինակ, հասնում է կանոնավոր բանակի թվական կազմի 50–100 տոկոսին, չհաշված զանազան ռազմա-սպորտային և այլ նրանց նման կազմակերպությունները, վորոնք զբաղվում են յերիտասարդության ու բնակչության ռազմական պատրաստությամբ:

Հատկապես արագորեն աճում է զինված ուժերի թվական կազմը ֆաշիստական պետություններում: Այսպես, օրինակ, Իտալիայում 1933 թվին բանակում յեղել է 342 հազար հոգի, իսկ 1937 թվին՝ 750 հազար հոգի. ռազմա-օդային ուժերի մեջ առաջին գծի ինքնաթիռներ 1933 թվին յեղել են 1100 հատ, իսկ 1937 թվին— 2000 հատ: Սպառազինումների էլ ավելի խիստ

աճում տեղի յե ունենում ֆաշիստական Գերմանիայում: Այդ յերևում ե հետևյալ աղյուսակից.

| | 1933 թ. | 1937 թ. |
|---|---|---|
| Բանակ . . . . . . . . . | 100 հազ. հոգի | 900 հազ. հոգի |
| Հետևակ դիվիզիաներ . . | 7 | 38 |
| Տանկեր . . . . . . | — | 3000 հատ |
| Առաջին գծի ինքնաթիռներ | 250 հատ | 3000 » |
| Ռազմական ծախսեր . | 960 մլ. մա. | 12600 մլ. մա. |

Ֆրանսիական գեներալ Նիսսելը գրում ե, վոր գերմանական կառավարությունը մըտադիր ե խաղաղ ժամանակվա բանակի թվական կազմը հասցնել մինչև 56 դիվիզիայի, այսինքն ունենալ 6 դիվիզիայով ավելի, քան ուներ Գերմանիան 1914 թվի իմպերիալիստական պատերազմի սկզբում:

Չինաստանի դեմ կողոպտիչ պատերազմ մղող Ճապոնիայի զինված ուժերը նույնպես, զգալիորեն աճել են: Արդեն այժմ Չինաստանում գործող նրա բանակը հասնում ե 600–700 հազար հոգու, ըստ վորում բանակում մոբիլիզացիայի յեն յենթարկված ավելի քան մեկ միլիոն մարդ: Ռուսաստանի դեմ մղած պատերազմի ժամա-



նակ, ճապոնական գործող բանակն ուներ ընդամենը 430 հազար մարտիկ, մոտավորապես նույնքան ել մոբիլիզացիայի յեր յենթարկված բանակում:

## ԶՈՐՔԻ ԿՐԱԿԱՅԻՆ ՀԶՈՐՈՒԹՅԱՆ ՈՒԺԵՂԱՑՈՒՄԸ

Բանը սակայն, միայն կապիտալիստական բանակների թվական կազմի աճումը չե: Ամենաեյական նշանակություն ե տըրվում նրանց տեխնիկական սպառազինմանը: Թե ցամաքային զորքերն ինչպես են սպառազինվում հրացանով, դրա համար որինակ կարող ե ծառայել գերմանական դիվիզիան: Հայտնի յե, վոր հետևակ դիվիզիաները հրացանի տեսակետից ամենաբարձր սպառազինման հասան 1914–1918 թ. թ. իմպերիալիստական պատերազմի վերջին: Պատերազմից հետո մի շարք յերկրներում խաղաղ ժամանակվա զինվորական միավորումները կրճատվեցին: Գերմանիայում հետևակ դիվիզիան հետևյալ փոփոխությունները կրեց սպառազինման տեսակետից.

| | 1918 թ. դիվիզիա | 1928 թ. դիվիզիա | 1938 թ. դիվիզիա |
| --- | --- | --- | --- |
| Գումարտակներ . . . . | 9 | 9 | 9 |
| Գնդացիրներ . . . . . . | 340 | 270 | 457 |
| Գնդային հրանոթներ . . | 36 | 36 | 96 |
| Թեթև հրանոթներ . . . | 32 | 36 | 36 |
| Ծանր հրանոթներ . . . | 9 | — | 24 |

Աղյուսակից յերևում է, վոր մինչդեռ գումարտակների թիվը անփոփոխ կերպով մնացել է 9-ը, 1938 թ. դիվիզիան իր սպառազինմամբ վոչ միայն ընդունել է պատերազմական ժամանակվա դիվիզիայի բնույթը, այլև առավել հզոր հրազենի բոլոր տեսակների գծով զգալիորեն գերազանցել է 1918 թ. դիվիզիային: Հատկապես աչքի յե զարնում գնդացիրների, գնդային հրանոթների և ծանր հրետանու թվական կազմի աճումը: Աղյուսակի մեջ գնդային հրանոթների սյունակում մտցված են ականանետները և հակատանկային թնդանոթները: Վերջիններիս թիվը գերմանական բանակում, ֆրանսիական մամուլի տվյալներով, հասցվում է յուրաքանչյուր դիվիզիայում



մինչև 72-ի: Հետևակը հրազենով այդպես սպառազինելու տենդենց նկատվում է նաև կապիտալիստական մյուս բանակներում: ԱՄՆ-ում, բացի դրանից, փորձեր են կատարվում հետևակը գոյություն ունեցող փամփշտանոցային հրացանների փոխարեն կիսաավտոմատիկ հրացաններով սպառազինելու ուղղությամբ, վորը պետք է ե՛լ ավելի ուժեղացնի հետևակի կրակային հզորությունը:

Հրետանու վերաբերյալ, ամբողջ վերահիշյալից բացի, անհրաժեշտ է նշել նրա հեռաձգությունն ու հզորությունն ավելացնելու ձգտումը: Արկի հզորությունն ուժեղացնելու նպատակով է հենց, վոր Գերմանիայում, օրինակ, ամբողջ թեթև դիվիզիոնային հրետանին թնդանոթների փոխարեն զինված է հաուբիցներով: Այդպիսի վերասպառազինման հետևանքով դիվիզիական հրետանու կալիբրը 75 միլիմետրից հասցըվում է մինչև 105 միլիմետրի, այսինքն այդ հրետանու արկերը կունենան զգալիորեն ավելի մեծ կործանիչ ուժ: Ինչ վերաբերում է հրաձգության հեռավորությանը, ապա այդ համաշխարհային պատերազմից

Հետո աճել է հետևյալ կերպ (կիլոմետրերով):

| | 1918 թ. | 1938 թ. |
|---|---|---|
| Դաշտային թեթև թնդանոթներ | 8 | 13 |
| 10—12 սմ. կալիբրանոց թնդանոթներ | 10—12 | 18—20 |
| 15 սմ. ծանր թնդանոթներ | 16 | 26 |
| Յերկաթուղային թնդանոթներ | 40 | 60—65 |

## ՄՈՏՈՐԻԶԱՑԻԱ ՅԵՎ ՄԵԽԱՆԻԶԱՑԻԱ

Ցամաքային զինված ուժերի զարգացման մեջ վճռական նշանակություն են ստացել մեխանիկացիայի յենթարկված մարտական միջոցները, առաջին հերթին տանկերը: Ոտարերկրյա մամուլի տվյալներով, միայն յեվրոպական կապիտալիստական չորս պետությունների բանակներում —Անգլիայի, Ֆրանսիայի, Գերմանիայի և Իտալիայի— կա մոտ 12500 տանկ, մինչդեռ 1918 թվին, իմպերիալիստական պատերազմի վերջին, պատերազմող բոլոր պետությունները ունեյին միայն 8 հազար տանկ: Ըստ վորում, ժամանակակից տանկերն աչքի յեն ընկնում անհամեմատ ավելի լավ մարտական հատ-



կություններով, քան համաշխարհային պատերազմի շրջանի տանկերը: Ներկայումս, որինակ, ամերիկյան արագընթաց տանկերը մեկ ժամում զարգացնում են մինչև 80–100 կիլոմետր արագություն: Մյուս կողմից, փորձարկման են յենթարկում 70–100 տոնն քաշ ունեցող գերծանր տանկեր: Ոտարերկրյա մամուլի վերջին տեղեկություններով, այդպիսի 100 տոննանոց տանկ կառուցվում է, մասնավորապես, Ֆաշիստական Գերմանիայում:

Տանկային սպառազինման աճման հետ միաժամանակ, կապիտալիստական պետություններում տեղի յե ունենում բանակների մոտորիզացիա: Վոչ միայն խոշոր, այլև փոքր պետություններում փորձարկվում են մոտո-մեխանիզացիայի յենթարկված միավորումներ (բրիգադներ, դիվիզիաներ): Գերմանիայում, որինակ, կազմակերպվել են յերեք մոտո-մեխանիզացիայի յենթարկված դիվիզիաներ (այդ դիվիզիաների թիվը, ինչպես հաղորդում է ֆրանսիական մամուլը,—յենթադրվում է կրկնապատկել): Այդպիսի դիվիզիայի կազմի մեջ մտնում են մոտորիզացիայի յենթարկված հրաձիգ բրիգադա ու տանկերի բրիգադա,

ինչպես նաև մեխանիկական քարշ ունեցող հրետանի ու այլ մասեր: Իտալիայում գոյություն ունեն 3-4, այսպես կոչված, շարժական (մոտորիզացիայի յենթարկված զորամասեր ու հեծելազոր) և մոտո-մեխանիզացիայի յենթարկված դիվիզիաներ: Այդ բոլոր զորքերը նախատեսվում են պատերազմի ժամանակ արագ կերպով հակառակորդի տերիտորիան ներխուժելու համար:

Բացի դրանից, մոտորիզացիայի յեն յենթարկվում հրետանին (ծանր հրետանին լրիվին մոտորիզացիայի յե յենթարկված կապիտալիստական բանակների մեծ մասում), կապի զորամասերը, ինժեներային զորքերը և այլն: Մի խոսքով, ցամաքային զորքերին ձգտում են տալ վոչ միայն առավելագույն կրակային ու հարվածող ուժ, այլ նաև մեծ շարժունակություն, հակառակորդին հանկարծակի, շշմեցուցիչ հարված հասցնելու նպատակով:

## ՌԱԶՄԱ-ՈԴԱՅԻՆ ՈՒԺԵՐԸ

1914—1918 թ. թ. իմպերիալիստական պատերազմը ցույց տվեց ինքնաթիռների



մարտական գործադրման լայն հնարավորությունները: Այդ պատերազմի ժամանակ ռազմա-ոդային ուժերի թվական կազմի աճումն ամենագլխավոր կապիտալիստական պետություններում, յերևում է հետևյալ աղյուսակից՝

| — | 1914 թ. | | 1918 թ. | |
|---|---|---|---|---|
| | Ինքնաթիռներ՝ շարքում | Ընդամենը՝ մարտական ինքնաթիռներ | Ինքնաթիռներ՝ շարքում | Ընդամենը՝ մարտական ինքնաթիռներ |
| Գերմանիա . | 232 | 300 | 2730 | 14000 |
| Ֆրանսիա . | 156 | 560 | 3321 | 7000 |
| Անգլիա . . | 30 | 272 | 1758 | 4000 |
| ԱՄՆ . . . | 30 | — | 740 | 6000 |
| Իտալիա . . | 30 | 143 | 1055 | 2600 |

Ինչպես մարտական ինքնաթիռների, այնպես և շարքում յեղած ինքնաթիռների ընդհանուր թիվն այդ բոլոր պետություններում, միասին վերցված, պատերազմի ընթացքում աճեց քսան անգամ: Միանգամայն պարզ է, վոր ապագա պատերազմում ևս կապիտալիստական պետությունները կձգտեն առավելագույն չափով ավելացնել իրենց ոդային ուժերը: 1938 թվի սկզբին

ինչպես նաև մեխանիկական քարշ ունեցող հրետանի ու այլ մասեր: Իտալիայում գոյություն ունեն 3–4, այսպես կոչված, շարժական (մոտորիզացիայի յենթարկված զորամասեր ու հեծելազոր) և մոտո-մեխանիզացիայի յենթարկված դիվիզիաներ: Այդ բոլոր զորքերը նախատեսվում են պատերազմի ժամանակ արագ կերպով հակառակորդի տերիտորիան ներխուժելու համար:

Բացի դրանից, մոտորիզացիայի յեն յենթարկվում հրետանին (ծանր հրետանին լիովին մոտորիզացիայի յե յենթարկված կապիտալիստական բանակների մեծ մասում), կապի զորամասերը, ինժեներային զորքերը և այլն: Մի խոսքով, ցամաքային զորքերին ձգտում են տալ վոչ միայն առավելագույն կրակային ու հարվածող ուժ, այլ նաև մեծ շարժունակություն, հակառակորդին հանկարծակի, շշմեցուցիչ հարված հասցնելու նպատակով:

## ՌԱԶՄԱ-ՈԴԱՅԻՆ ՈՒԺԵՐԸ

1914—1918 թ. թ. իմպերիալիստական պատերազմը ցույց տվեց ինքնաթիռների



մարտական գործադրման լայն հնարավորությունները: Այդ պատերազմի ժամանակ ռազմա-ոդային ուժերի թվական կազմի աճումն ամենագլխավոր կապիտալիստական պետություններում, յերևում է հետևյալ աղյուսակից՝

| — | 1914 թ. | | 1918 թ. | |
|---|---|---|---|---|
| | Ինքնաթիռներ՝ շարքում | Ընդամենը՝ մարտական ինքնաթիռներ | Ինքնաթիռներ՝ շարքում | Ընդամենը՝ մարտական ինքնաթիռներ |
| Գերմանիա . | 232 | 300 | 2730 | 14000 |
| Ֆրանսիա . | 156 | 560 | 3321 | 7000 |
| Անգլիա . . | 30 | 272 | 1758 | 4000 |
| ԱՄՆ . . . | 30 | — | 740 | 6000 |
| Իտալիա . . | 30 | 143 | 1055 | 2600 |

Ինչպես մարտական ինքնաթիռների, այնպես և շարքում յեղած ինքնաթիռների ընդհանուր թիվն այդ բոլոր պետություններում, միասին վերցված, պատերազմի ընթացքում աճեց քսան անգամ: Միանգամայն պարզ է, վոր ապագա պատերազմում ևս կապիտալիստական պետությունները կձգտեն առավելագույն չափով ավելացնել իրենց ոդային ուժերը: 1938 թվի սկզբին

այդ պետությունները ունեն հետևյալ քանակությամբ ինքնաթիռներ.

| | Ինքնաթիռներ՝ շարքում | Ընդամենը՝ մարտական ինքնաթիռներ |
|---|---|---|
| Գերմանիա . . . . . . . | 3000 | 4500 |
| Ֆրանսիա . . . . . . . . | 2200 | 3500 |
| Անգլիա . . . . . . . . | 2000 | 3500 |
| ԱՄՆ . . . . . . . . . . | 2000 | 3800 |
| Իտալիա . . . . . . . . | 2000 | 3500 |

Եթե նույնիսկ մենք յենթադրենք, վոր օդային ուժերի թվական կազմի աճում տեղի կունենա 2–3 անգամ, ապա այդ դեպքում էլ մենք կստանանք 20–30 հազար ինքնաթիռ՝ շարքում և մոտ 40–60 հազար մարտական ինքնաթիռ: Դժվար է պատկերացնել, թե ինչպիսի ավերածություններ կարող են կատարել այդպիսի հսկայական թվով ինքնաթիռները, յեթե հաշվի առնենք, վոր կապիտալիստական պետությունների մեծամասնության օդային ուժերի մեջ ինքնաթիռների ընդհանուր թվի



առնվազն կես մասը կազմում են ռմբակոծիչները:

Վերևում թվարկված պետություններում 1925 թվին յեղել է մոտավորապես 3000 ինքնաթիռ՝ շարքում, 1933 թվին արդեն 6000, իսկ 1938 թվին— ավելի քան 11 հազար: Հետևապես, 1925 թվից հետո այդ կապիտալիստական պետությունների ռազմական ավիացիայի թվական կազմն աճել է ավելի քան յերեք անգամ:

Այդ աճումը շարունակվում է: Իտալիան օրինակ, մտադիր է առաջին գծի (շարքում յեղած) իր ավիացիայի թվական կազմը 1941 թվին հասցնել մինչև 4000 ինքնաթիռի: Ֆաշիստական Գերմանիան սպառնում է իր օդային ուժերն ավելացնել 3—4 անգամ: Հայտնի չէ, ֆաշիստներին կհաջողվի արդյոք իրականացնել այդ սպառնալիքը, քանի վոր գերմանական ժողովուրդը խեղդվում է ռազմական ծախսերի ծանրության տակ: Ֆաշիստական յերկրների աշխատավոր բնակչությունն առյժմ էլ արդեն կիսաքաղց գոյություն է քարշ տալիս: Սակայն գերմանո-իտալական ինտերվենցիան Իսպանիայում և Ճապոնիայի հարձակումը Չինաստանի վրա, ցույց են տա-

այդ պետություններն ունեն հետևյալ քանակությամբ ինքնաթիռներ·

| | Ինքնաթիռներ՝ չարքում | Ընդամենը՝ մարտական ինքնաթիռներ |
|---|---|---|
| Գերմանիա . . . . . . | 3000 | 4500 |
| Ֆրանսիա . . . . . . . | 2200 | 3500 |
| Անգլիա . . . . . . . . | 2000 | 3500 |
| ԱՄՆ . . . . . . . . . | 2000 | 3800 |
| Իտալիա . . . . . . . . | 2000 | 3500 |

Յեթե նույնիսկ մենք յենթադրենք, վոր ոդային ուժերի թվական կազմի աճում տեղի կունենա 2–3 անգամ, ապա այդ դեպքումն էլ մենք կստանանք 20–30 հազար ինքնաթիռ՝ չարքում և մոտ 40–60 հազար մարտական ինքնաթիռ: Դժվար է պատկերացնել, թե ինչպիսի ավերածություններ կարող են կատարել այդպիսի հսկայական թվով ինքնաթիռները, յեթե հաշվի առնենք, վոր կապիտալիստական պետությունների մեծամասնության ոդային ուժերի մեջ ինքնաթիռների ընդհանուր թվի



առնվազն կես մասը կազմում են ռմբակոծիչները:

Վերևում թվարկված պետություններում 1925 թվին յեղել է մոտավորապես 3000 ինքնաթիռ՝ չարքում, 1933 թվին արդեն 6000, իսկ 1938 թվին— ավելի քան 11 հազար: Հետևապես, 1925 թվից հետո այդ կապիտալիստական պետությունների ռազմական ավիացիայի թվական կազմն աճել է ավելի քան յերեք անգամ:

Այդ աճումը շարունակվում է: Իտալիան որինակ, մտադիր է առաջին գծի (չարքում յեղած) իր ավիացիայի թվական կազմը 1941 թվին հասցնել մինչև 4000 ինքնաթիռի: Ֆաշիստական Գերմանիան սպառնում է իր ոդային ուժերն ավելացնել 3—4 անգամ: Հայտնի չէ, ֆաշիստներին կհաջողվի արդյոք իրականացնել այդ սպառնալիքը, քանի որ գերմանական ժողովուրդը խեղդվում է ռազմական ծախսերի ծանրության տակ: Ֆաշիստական յերկրների աշխատավոր բնակչությունն ա՛յժմ էլ արդեն կիսաքաղց գոյություն է քարշ տալիս: Սակայն գերմանո-իտալական ինտերվենցիան Իսպանիայում և Ճապոնիայի հարձակումը Չինաստանի վրա, ցույց են տա-

լիս, թե փաշիստներն ինչպիսի հսկայական նշանակություն են տալիս օդային ուժերին: Իտալո-գերմանական ինտերվենտներն առաջին հերթին սկսեցին Իսպանիա ուղարկել ինքնաթիռներ: Ճապոնիան, որը պատերազմի սկզբին Չինաստանում ուներ 100 ինքնաթիռից ել պակաս, այժմ այնտեղ ունի մոտ հազար ինքնաթիռ:

## ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՈՒԺԵՐԸ

Խորհրդային Ռազմա-ծովային նավատորմիղն իր գոյության 20-րդ տարեդարձը դիմավորում է փիթխարի նվաճումներով: Հունվարի 15-ին ԽՍՀՄ Գերագույն Խորհուրդը հաստատեց Ռազմա-ծովային նավատորմիղի ժողովրդական կոմիսարիատի կազմակերպումը:

«Խորհրդային հզոր պետությունը,— ասաց Գերագույն Խորհրդի Նստաշրջանում ընկ. Մոլոտովը,— պետք է ունենա նրա շահերին համապատասխանող, մեր մեծ գործին վայել ծովային ու օվկիանոսային նավատորմիղ»:

Խորհրդային Միության ժողովուրդները չեն կարող մոռանալ և չեն մոռանում, որ իմպերիալիստական պետությունները նոր



վաղ են սկսել ծովային սպառազինումների ասպարեզում: Ճապոնիան և Իտալիան հրաժարվեցին ծովային սպառազինումների վերաբերյալ որևէ համաձայնությունից: Գերմանիայում այժմ կառուցման մեջ են գտնվում առնվազն 50 ռազմանավ (չհաշված մեծ թվով ոժանդակ ու ծովափնյա նավերը) 260 հազար տոնն ընդհանուր ջրածավալով (մինչև 1935 թ. գերմանական նավատորմիղի ընդհանուր տոննաժը կազմում էր 144 հազար տոնն): Այդ նավերի կառուցումն ավարտելուց հետո, Գերմանիայի ռազմա-ծովային նավատորմիղը բաղկացած կլինի 135 միավորից, որոնց թվում կլինեն 7 գծանավ, 13 հածանավ, 2 ավիակիր., 52 էսկադրային ականակիր և 61 սուզանավ: Բացի դրանից, պահպանվում է ևս վեց գծանավ (1904—1908 թ. թ. կառուցված) ու այլ նավեր, որոնք պաշտոնապես ջնջվելու յեն նավատորմիղի ցուցակից: Մինչև 1934 թվին գերմանական ծովային նավատորմիղն ուներ ընդամենը 43 միավոր:

Իտալիայի ռազմա-ծովային նավատորմիղում 1938 թվի սկզբին, ամերիկյան մամուլի տվյալներով, լինելու յե 100 սու-

դանավ, մինչդեռ 1935 թ. յեղել է 69 սուզանավ: Հետևապես, 2–3 տարվա ընթացքում Իտալիայի ստորջրյա նավատորմիղի թվական կազմն աճել է 30 տոկոսով: Վերջերս իտալական կառավարությունը հայտարարեց սուզանավերի շինարարության նոր ծրագիրը: Բացի յերկու արդեն ջրարկված գծանավերից, վորոնցից յուրաքանչյուրն ունի 35 հազար տոնն ջրածավալ (գծանավերի շինարարությունը մինչև 1936 թիվն արգելված եր միջազգային ծովային պայմանագրերով) և այլ նավերից, ծրագիրը նախատեսում է կառուցել ևս յերկու այդպիսի գծանավ, 12 եսկադրային ականակիր ու մեծ թվով սուզանավեր:

Ճապոնիայի ծովային ծրագրերը հանրածանոթ են: Ճապոնական հրամանատարությունը մտադիր է ծովային նավատորմիղն ավելացնել, հասցնելով ամերիկյան ու անգլիական նավատորմիղների չափին: Վերջերս, անգլիական իրազեկ մասնագետ Բայուոտերը հաղորդել եր մամուլում, վոր բոլոր ծրագրերից բացի, Ճապոնիան 1937 թվին ձեռնարկել է յերկու գծանավերի կառուցման, յուրաքանչյուրը 43 հազար տոնն ջրածավալով: Բացի դրանից, նախապատ-



րաստվում է դարձյալ յերկու այդպիսի նավերի կառուցումը: Կառուցվում են մի քանի հածանավեր, 10 հազարական տոնն ջրածավալով և այլն: Հատկանշական յե, վոր այնպիսի պետություններ, ինչպես Անգլիան և ԱՄՆ-ը, չեն ցանկանա ծովային սպառազինումների ասպարեզում առաջնությունը զիջել մեկ ուրիշի: Մի խոսքով, քանակային տեսակետից կապիտալիստական պետությունների ծովային նավատորմիղներն աճում են հսկայական ինտենսիվությամբ:

Վորակական փոփոխություններն արտահայտվում են նավային հրետանու հզորության, նրա հեռաձգության, նավերի ընթացքի արագության աճման, սպառազինումների ավելացման մեջ և այլն: Գծանավերի և հածանավերի հրետանու տախտակամածային համազարկի քաշը 1914 թվի համեմատությամբ ավելացել է մեկ ու կեսից մինչև յերկու ու կես անգամ: Հրանոթների հեռաձգությունն աճել է մոտավորապես 50 տոկոսով (խոշոր հրետանին կրակում է մինչև 40 կիլոմետր հեռավորության վրա), նավերի ընթացքի արագությունը նույնիսկ 1918 թվի համեմա-

ությամբ ավելացել է առնվազն 30 տոկոսով:

## «ՏՈՏԱԼ» ՊԱՏԵՐԱԶՄԻ ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԸ

«Տոտալ» (համապարփակ) պատերազմը ֆաշիստական մամուլի կողմից հոլովվում է բոլոր ձևերով: Հայտնի է, որ ֆաշիստները ձգտում են այն բանին, որպեսզի պատերազմը լինի կարճատև: Նրանք մտածում են հակառակորդին հասցնել ուժգին, հանկարծակի հարված, որպեսզի ջախջախել նրան ավելի շուտ, քան նա կպատրաստի դիմադրություն: Այդ ձգտումը ժամանակին առաջ բերեց «նոր» թեորիաներ՝ մեքենայացված հարվածող փոքր բանակների օգնությամբ պատերազմելու մասին (Ֆուլլերի, Սեկտի և մյուսների թեորիաները): Այդ թեորիաները չափազանց գրավիչ էին ֆաշիստների համար, քանի որ դրանք նրանց ազատում էին զինված մասսաների հանդեպ ունեցած ահից: Բայց դրանք ոչ մի ընդհանուր բան չունեյին կապիտալիստական պետությունների սպառազինման պրակտիկայի հետ: Այդ թեորիաների տխմարությունն ամբողջ



աշխարհին ամենից ավելի ակնառու կերպով ցուցադրեցին հենց իրենք՝ գերմանական ֆաշիստները, ամենակարճ ժամանակամիջոցում կազմելով խաղաղ ժամանակվա միլիոնանոց բանակ:

Ի հակակշիռ փոքր բանակների միջոցով պատերազմ վարելու թեորիաներին, ֆաշիստական Գերմանիայում գեներալ Լյուդենդորֆն առաջ քաշեց «տոտալ» պատերազմի թեորիան: Լյուդենդորֆը հայտարարում է, թե «բանակը երբեք չի կարող բավարար լինել թվական կազմով»: Ապագա պատերազմը կպահանջի մասսայական, բազմաթիվ բանակներ: Ամբողջ ազգաբնակչությունը, որն ընդունակ է զինվորական ծառայության համար պետք է մոբիլիզացիայի ենթարկվի: Բայց «տոտալ» պատերազմը կայանում է ո՛չ միայն ռազմաճակատում կատարվող պատերազմական գործողությունների մեջ: Պատերազմական գործողությունների թատերաբեմ կլինի ամբողջ երկիրը: Հակառակորդը բնաջինջ կարվի ֆիզիկապես և կճնշվի բարոյապես (խաղաղ քաղաքների ռմբակոծություն): «Ագիտացիան, — գրում է Լյուդենդորֆը, — այդ պատերազմում կխաղա նույնպիսի

աությամբ ավելացել է առնվազն 30 տոկոսով:

## «ՏՈՏԱԼ» ՊԱՏԵՐԱԶՄԻ ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ԳԱՂԱՓԱՐՆԵՐԸ

«Տոտալ» (համապարփակ) պատերազմը ֆաշիստական մամուլի կողմից հոլովվում է բոլոր ձևերով: Հայտնի է, որ ֆաշիստները ձգտում են այն բանին, որպեսզի պատերազմը լինի կարճատև: Նրանք մտածում են հակառակորդին հասցնել ուժգին, հանկարծակի հարված, որպեսզի ջախջախել նրան ավելի շուտ, քան նա կպատրաստվի դիմադրության: Այդ ձգտումը ժամանակին առաջ բերեց «նոր» թեորիաներ՝ մեքենայացված հարվածող փոքր բանակների օգնությամբ պատերազմելու մասին (Ֆուլլերի, Սեկտի և մյուսների թեորիաները): Այդ թեորիաները չափազանց գրավիչ էյին ֆաշիստների համար, քանի որ դրանք նրանց ազատում էյին զինված մասսաների հանդեպ ունեցած ահից: Բայց դրանք ոչ մի ընդհանուր բան չունեյին կապիտալիստական պետությունների ապառազմման պրակտիկայի հետ: Այդ թեորիաների ունայնությունն ամբողջ



աշխարհին ամենից ավելի ակնառու կերպով ցուցադրեցին հենց իրենք՝ գերմանական ֆաշիստները, ամենակարճ ժամանակամիջոցում կազմելով խաղաղ ժամանակվա միլիոնանոց բանակ:

Ի հակակշիռ փոքր բանակների միջոցով պատերազմ վարելու թեորիաներին, ֆաշիստական Գերմանիայում գեներալ Լյուդենդորֆն առաջ քաշեց «տոտալ» պատերազմի թեորիան: Լյուդենդորֆը հայտարարում է, թե «բանակը յերբեք չի կարող բավարար լինել թվական կողմով»: Ապագա պատերազմը կպահանջի մասսայական, բազմաթիվ բանակներ: Ամբողջ ազգամարդ բնակչությունը, որն ընդունակ է զինվորական ծառայության համար պետք է մոբիլիզացիայի յենթարկվի: Բայց «տոտալ» պատերազմը կայանում է ո՛չ միայն ռազմաճակատում կատարվող պատերազմական գործողությունների մեջ: Պատերազմական գործողությունների թատերաբեմ կլինի ամբողջ յերկիրը: Հակառակորդը բնաջինջ կարվի ֆիզիկապես և կճնշվի բարոյապես (խաղաղ քաղաքների ռմբակոծություն): «Ագիտացիան,— գրում է Լյուդենդորֆը,— այդ պատերազմում կխաղա նույնպիսի

դեր, ինչպես թունավոր նյութերը»: «Տոտալ» պատերազմը կպահանջի յերկրի բոլոր ռեսուրսների մոբիլիզացիա:

Բայց քանի վոր հարձակման հանկարծակիություն պետք ե լինի նաև «տոտալ» պատերազմում, ապա Լյուդենդորֆը պահանջում ե, վոր պատերազմն սկսվի առանց այդ մասին հայտարարելու, վորպեսզի ավիացիան անմիջապես սկսի ջախջախել հակառակորդին, հատկապես նրա ինդուստրիալ ու քաղաքական կենտրոնները և վորպեսզի ցամաքային զորքերը սրընթաց ներխուժեն հակառակորդի տերիտորիան:

Իսկ դրա համար պետք ե պատերազմին պատրաստ լինել ամեն րոպե: Այդ պատճառով, արդեն խաղաղ ժամանակ պետք ե յերկիրը վերածել ռազմական ճամբարի: Բոլոր քաղաքական, տնտեսական, ֆինանսական և կուլտուրական շահերը պետք ե յենթարկված լինեն պատերազմի կարիքներին: Յերկրի ամբողջ տնտեսությունը պետք ե հարմարեցված լինի այդ կարիքների սպասարկման համար: Այն արդեն խաղաղ ժամանակ դառնում ե ռազմական:

«Տոտալ» պատերազմի այս թեորիան ակնառու կերպով արտացոլում ե ֆաշիստա-



կան իրականությունը: Այնպիսի յերկրներ, ինչպես Գերմանիան, Իտալիան, Ճապոնիան, արդեն այժմ վեր են ածված ռազմական ճամբարների: Տնտեսության բոլոր ճյուղերն այդ պետություններում յենթարկված են պատերազմին: Այդ պետություններից յուրաքանչյուրն ակնառու հաստատումն ե հանդիսանում այն բանի, վոր ֆաշիզմը— այդ պատերազմ ե: Բայց վայ ֆաշիստական ագրեսորներին, յեթե նրանք կփորձեն հարձակվել Խորհրդային Միության վրա: Սոցիալիզմի յերկրի ծովային ու ցամաքային սահմանները պաշտպանվում են պանծալի Բանվորա — Գյուղացիական Կարմիր Բանակի և Խորհրդային Ռազմածովային Նավատորմիղի կողմից: Իրենց գոյության 20 տարվա ընթացքում սոցիալիզմի յերկրի զինված ուժերը վերածվեցին այնպիսի ուժի, վորը վոչ միայն կործանիչ հակահարված կտա ամեն մի հարձակման, այլև թշնամուն կջախջախի նրա իսկ տերիտորիայում:



Պատ. խմբագիր՝ ԲԱԼԱԲԵԿ ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Քարտուղար՝ ՀՐ. ՄԱՐԳԱՐՅԱՆ
*Սրբագրիչ՝* Հ. Ջրաղացպանյան
Ստորագրված է տպագրու թ. 17/II 1938 թ.
Պատվեր № 163, Տիրաժ 8381
*ԳԼԱՎԼԻՏԻ ԼԻԱԶՈՐ՝ ՑԵ*—3902

«ԽՈՐՀ. ՀԱՅԱՍՏԱՆ»-Ի ՀՐԱՏ. ՏՊԱՐԱՆ,
ՅԵՐԵՎԱՆ